միլիառ տոլար (ելմտացոյցին 72 առ հարիւրը) յատկացուցած է զինուորական ծախքերու, 20 միլիառ ալ Ատլանտեանի պաշտպանութեան, ուստի կը սպասէ որ եւրոպական պետութիւններն ալ աւելցնեն իրենց նիւթական յանձնառութիւնները: Պ. Էչիսըն ծրագիր մը մշակած է, այս առաջադրութեամբ: Միեւնոյն ատեն պիտի մտածեն թէ ինչպէս կարելի է բարելաւել զինամթերքի արտադրութիւնը, առանց յաւելուածական ծախքերու :

★ Փարիզի քաղաքական շրջանակներուն մէջ կը կարծեն թէ Ֆրանսական կառավարութիւնը նոր ծրագիր մը պիտի առաջարկէ, նկատելով որ Լոնտոն եւ Ուաշինկթըն շատ չեն հետաքրքրուիր Ատլանտեանի Գերագոյն Խորհուրդի առաջարկով (Պլիտոյի ծրագիրը): Այս անգամ պիտի առաջարկեն աւելի սահմանափակ մարմին մը, կապ հաստատելու համար զինուորական իշխանութեանց եւ ելմտական նախարարներուն միջեւ :

Այս առթիւ իրագեկներ դիտել կուտան թէ գրեթէ մէկ տարի կորսուեցաւ, Եւրոպայի վերազինման համար: Ամիսներ անցան եւ Ֆրանսան, որ ստացած պէտք էր ըլլար իրեն սահմանուած զինամթերքին կէսը, ճիշդ 44 օդանաւ ստացած է մինչեւ հիմա :

★ Ֆրանսայի ազգ. պաշտպանութեան նախարարը Պ. Փլեվէն, յայտարարեց թէ ամերիկեան զինամթերքը փոխադրել պիտի տայ որեւէ նաւահանգիստ, ապացուցանելու համար թէ «ֆրանսական կառավարութիւնը տանտէր է իր երկրին մէջ»:— Լա Ռոշէլի նաւահանգստին բանուորները մերժեցին բեռցնել Հնդկաչինի սահմանուած բեռ մը (1500 թոն): Գործողութիւնը կատարեցին 167 զինուորներ եւ նաւազներ :

★ Մ. Նահանգներու արտաքին նախարարը առջի օր կրկին մեղադրեց Խ. Միութիւնը թէ նոր խոչընդոտներ կը յարուցանէ, ուշացնելով Աւստրիոյ անկախութեան դաշնագրին կնքումը : Այս առթիւ բացատրեց թէ ամէն միջոց պիտի փորձեն, որպէսզի ռուսական զօրքը քաշուի Աւստրիայէն :

### «ԹՐՔԱԿԱՆ ՄԻՋՆԱԲԵՐԴԸ »

Ամերիկեան մեծ օրաթերթը, «Նիւ Եորք Թայմզ», որ տարիներէ ի վեր թրքասիրական քաղաքականութեան մը կը հետեւի, կը գրէ այս խորագրով խմբագրականի մը մէջ.—

Թուրքերը բացարձակ վճռականութեամբ մերժեցին Ռուսերուն սպառնալիքներն ու գրգռութիւնները: Ռուսերուն նպատակն էր կցել Կարս եւ Արտահան նահանգները եւ նոր վարչաձեւ մը հաստատել Նեղուցներու մասին: Ուրիշ խօսքով, խորհրդային տիրապետութիւն հաստատել եւ Թուրքիան վերածել Պալքանեան նոր արբանեակի մը: Թուրքիոյ մէջ համայնավար հինգերորդ թեւ չկայ, ինչ որ ուշագրաւ է, եթէ նկատի առնուի որ Թուրքիա երկու սահման ունի երկաթեայ վարագոյրին հետ: Մենք արեւմուտքցիներս պատերազմէն ի վեր Թուրքիան զօրացնելու համար մեր ձեռքէն եկածը ըրինք: Միւս կողմէ, Անգլիա եւ Ֆրանսա խոստացած են Թուրքիոյ օգնութեան փութալ, եթէ եւրոպական պետութեան մը յարձակման ենթարկուի: Բայց անտարակոյս Թուրքիոյ մտավախութիւնները չեն փարատած, որովհետեւ ան բաց է անակնկալ յարձակման մը առջեւ, որ պիտի գործուի հիւսիսէն կամ արեւմուտքէն: Բայց Թուրքիա օրէ օր կը զօրանայ :

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹՂԹԱՏԱՐԱԿԱՆ նախարարը զեկուցում տալով Ազգ. Ժողովին մէջ, խոստովանեցաւ թէ սակերու յաւելման հետեւանքով, նամակները, տպագրեալ նիւթերը եւ սովորական ծրարները նուազած են 11 առ հարիւր, յանձնարարեալ ծրարները՝ 33 առ հարիւր, հեռագիրները՝ 29 առ հարիւր: Միայն հեռաձայնի սպասարկութիւնը աւելցած է: 72.000 քաղաքացիներ գործիքի կը սպասեն: Այսուհետեւ կարգ մը կրճատումներ պիտի ըլլան.— Տպագրեալ նիւթերու 20 առ հարիւր զեղչով պիտի ընդունուին մինչեւ 300 կրամ (նախապէս հարիւր): Յանձնարարեալ նամակներու կորուստին համար իբրեւ հատուցում պիտի տրուի 2000 ֆրանք, փոխանակ 1500ի: Իտալիոյ համար պիտի գործադրուի Ֆրանսայի ներքին սակը: Պիտի զեղչուին օդանաւային թղթատարի ծախքերը, 10—12 երկիրներու համար :

ՆԵՐՔԻՆ ԳՈՐԾԵՐՈՒ յանձնաժողովը մերժեց 26 երեսփոխաններու կողմէ առաջարկուած օրինագիծ մը, որ կը պահանջէր վճռական միջոցներ ձեռք առնել համայնավարներուն դէմ :

ԶՕՐՍ ՄԻԼԻՈՆ ՖՐԱՆՔԻ հազուագիւտ նամակադրոշմներ գողցուեցան նամակադրոշմի թանգարանէն:

ԻՏԱԼԻՈՅ վարչապետը ստիպողական կոչ մը ուղղեց Մ. Նահանգներուն, Անգլիոյ եւ Ֆրանսայի, որպէսզի օգնեն, վերստանալու համար Թրիէսթէի ազատ շրջանը: Այս առթիւ ճառ մը խօսելով ծերակոյտին մէջ, մերժեց Ատլանտեանի դաշինքէն քաշուելու առաջարկը: Յետոյ կրկին պահանջեց որ արեւմտեան պետութիւնները ազդու միջամտութիւն մը կատարեն, որպէսզի Եուկոսլաւիա չգրաւէ Թրիէսթէի ազատ շրջանը :

## Կապոյտ Խաչի 40ամեակը Մարսէյլի մէջ

Մասնակցութեամբ շրջաններու եւ 9 քոյր մասնաճիւղերու: Այս շաբաթ երեկոյ, ժամը 9էն մինչեւ առաւօտ, Alhambraի շքեղ սրահներուն մէջ, 340 Bld. Chave:

Կը նախագահէ Տիկին ՔԻՊՐԻԹՃԵԱՆ
Կը բանախօսեն՝
Տիկ. Տ. ՄԻՍԱՔԵԱՆ եւ Պ. ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

Գեղարուեստական բաժինն իր մասնակցութիւնը կը բերէ Նիւ Եորքի City Central Opéra ընկերութեան Տրամաթիկ դերերու աստղերէն Տիկին ՍԻՐԶԱ ՍԻՄՕՆԷ – ՔԻՊՐԻԹՃԵԱՆ, հայ ժողովրդական եւ Սայաթ Նովայի երգերով :

Կը նուագէ սիրուած ջութակահար Լ. ՂԵԻՈՆԴԵԱՆ :

Արտասանութիւն, երգ, պար Կապոյտ Խաչի Սանուհիներուն կողմէ :

Կէս գիշերէն վերջ եւրոպական պարեր, ընտիր նուագախումբով : Մուտքը ազատ է

## Վասպուրականի հերոսամարտը Մարսէյլի մէջ

Նախաձեռնութեամբ Վասպուրականի Հայր. Միութեան :

14 Մայիս, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր Salle Mazenod, 88 rue d'Aubagne:

Տօնակատարութեան հրաւիրուած են Մարսիլահայ քաղաքական կուսակցութիւններու, կղերական դասու եւ բոլոր միութիւններու ներկայացուցիչները :

Կը նախագահէ Միութեան ատենապետ
Պ. Վ. ՊԱՆՏԻԿԵԱՆ
Կը բանախօսէ երիտասարդ – գրագէտ
Պ. Կ. ՓՕԼԱՏԵԱՆ

Խօսք կը տրուի նաեւ կուսակցութեանց ներկայացուցիչներուն:

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ «ՍԻՓԱՆ» երգչախումբի, ղեկավարութեամբ Պ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆի :

Կը նուագէ տաղանդաւոր ջութակահար Պ. ԼԵՒՈՆ ՂԵՒՈՆԴԵԱՆ, ընկերակցութեամբ Օր. ԱՆՆԷԹ ԺԻՒԼԻԷՆԻ:

Ընտիր նուագախումբ, Orchestre Francis Scotte ճոխ պիւֆէ մատչելի գիներով :

Պարեր ժամը 20էն մինչեւ կէս գիշեր :

## Եռյաւեակի մեծ հանդէս

Երեք անմահներու, ԱՂԲԻՒՐ – ՍԵՐՈԲԻ, ՀՐԱՅՐԻ եւ ԳԷՈՐԳ ՉԱՒՈՒՇի նահատակութեան 50ամեակին առթիւ: Նախաձեռնութեամբ ՏԱՐՕՆ – ՍԱԼՆՈՅ ՁՈՐԻ ՀԱՅՐ. ՄԻՈՒԹԵԱՆ : Կը նախագահէ ՀԱՅՐԵՆԱԿԻՑ Ք. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ: Կը խօսին Հ. Կ. ՏԷՐՄՈՅԵԱՆ եւ Գ. ՇԷԽԻԿԵԱՆ :

Գեղարուեստական խնամուած բաժին լաւագոյն ուժերով :

Մայիս 7ին կիրակի ժամը 2.30ին, ՄԱՐՍԷՅԼ, Salon Longchampի շքեղ սրահին մէջ, 33 Պուլվար Լոնշան :

### ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ

Կը տօնուի այս շաբաթ իրիկուն ժամը 9ին: Նախաձեռնութեամբ Լիոնի ՍԻԱՄԱՆԹՕ խումբին, մասնակցութեամբ Ֆ. Կ. ԽԱՉԻ ՍԱՆՈՒՀԵԱՑ միութեան, հովանաւորութեամբ «ՎԱՐԱՆԴԵԱՆ» կոմիտէի: Քրիստոնեայ երիտասարդաց սրահը, 8, Passage Coste, (Cours Lafayetteի սկիզբը) :

Կը նախագահէ ընկեր Բ. ԽՐԻՄԵԱՆ
Կը խօսի ընկեր ԱՐԱՄ ԹԱԹՈՒԼԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին: Կը բեմադրուի զաւեշտ մը՝ ՊԱՇՏՕՆՍ ԽՈՒՄԲԱԼ է:

Մուտքը ազատ է :

### ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ

35րդ տարեդարձը այս շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, Սէրքըլ Կաթոլիկ սրահին մէջ: Նախաձեռնութեամբ Վիէնի Վասպուրականցիներու Հայր. Միութեան եւ մասնակցութեամբ կուսակցութեանց եւ ազգ. միութեանց :

Կը խօսին Պ. Կ. ՓՕԼԱՏԵԱՆ եւ Պ. ԱԶԳԻՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ :

Գեղարուեստական ճոխ բաժին :

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹԸ

Նախագահութեամբ ԱՌԱՔԵԼ ՓԱՇԱ ՆՈՒՊԱՐի Մայիս 7ին, կիրակի օրը ժամը 4—12, Օթէլ Քոնթինանթալի շքեղ սրահներուն մէջ, 2 rue Rouget ըա l'Isle: Հաճելի անակնկալներ եւ գեղարուեստական ճոխ բաժին :

Այժմէն ապահովեցէք ձեր տոմսերը եւ սեղանը : Դիմելով Ely. 01–76:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԱՆԻԷՌ – ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ Արամ ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս ուրբաթ ժամը 9ին, ծանօթ սրճարանը: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն :

ՍԷՆ ԼՈՒ.— Հ. Յ. Դ. Ակնունի ենթակոմիտէին ընդհ. ժողովը՝ այս շաբաթ երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ :

Հ. Յ. Դ. ՌՈՍՏՈՄ խումբի ժողովը՝ այս կիրակի առտու ժամը 9.30ին, ծանօթ հաւաքատեղին :

Ֆր. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Իսիի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ երեկոյ ժամը 8.30ին: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ :

Ֆր. ԿԱՊ. ԽԱՉԻ Շավիլի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ այս երեքշաբթի գիշեր ժամը 9ին, բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր – Սերոբ եւ Մ. Եօթնեղբայրեան խումբի ընդհ. ժողովը այս ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին: Ժողովէն ետքը դասախօսութիւն: Սովորական տեղը :

ՓԱՐԻԶԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻ հերթական հաւաքոյթը՝ այս ուրբաթ ժամը 8.30ին, Café Régent: Նիւթ՝ «Սովետ. մշակոյթ» (Շար.): Զեկուցանող Պ. Ա. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ: Մտքերու փոխանակութիւն :

Հ. Մ. Մ.ի ընդհ. ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին: Բոլոր մարզիկները անխտիր կը հրաւիրուին Stade Olier մարզադաշտը, 11 rue d'Arcueil: Կարեւոր օրակարգ եւ կարգադրութիւններ յառաջիկայ մարզադաշտին համար:

Պ. ՋՕՊԱՆԵԱՆի յառաջիկայ գրական դասախօսութիւնը Հայ Ուս. Տան մէջ (57 Պուլվառ Ժուռտան), այս շաբաթ օրը, ժամը 5ին : Նիւթ՝ «Միջնադարեան մեծ աշուղ ՆԱՀԱՊԵՏ ՔՈՒՉԱԿի վերագրուած տաղերը»: Մուտքը ազատ է:

ՎԱԼԱՆՍ.— Կապոյտ Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Ա. Ահարոնեան ակումբին մէջ: Խիստ կարեւոր օրակարգ :

ՅԵՏԱՁԳՈՒԱԾ է Մարսէյլի Հայ Արիներու պարահանդէսը:

Նոր թուական՝ 2 Օգոստոս, շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ լոյս, Colisée–Plage :

ԼԻՈՆԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ Ազգ. Միութիւններէ եւ բոլոր կազմակերպութիւններէ կը խնդրուի ոեւէ հանդէս չկազմակերպել Յունիս 18ին, չխաչաձեւելու համար Կոմիտաս վարդապետին 80ամեակին առթիւ սարքուած երգահանդէսը, որ տեղի պիտի ունենայ Յունիս 18ին, Լիոն, Salle Rameauի մէջ, Մարսէյլի « ԱՐՄԵՆԻԱ » երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ Պ. Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆի:

Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷՆ ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—

Այսօր ուրբաթ ժամը 8ին Թաթուլ խումբը :

Այս կիրակի ժամը 3.30ին Հայաստան ենթակոմիտէն եւ Նիկոլ Դուման:

(Շար.)

### Ֆր. Կ. ԽԱՉԻ ՎԱՐԻՉՆԵՐՈՒ ԴԱՍԸՆԹԱՑՔԸ

Այս շաբաթ, Մայիս 6ին, ժամը 4ին, Սօսիէթէ Սավանթ :

Մուտքը ազատ է

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Սահակ Պօյաճեանի անակնկալ մահուան առթիւ Իսիի Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէն իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ այրի Տիկ. Պօյաճեանի, զաւակներուն եւ բոլոր ընտանեկան պարագաներուն :

ՓԱՐԻԶԻ ԿԵԴՐՈՆԸ

PARFUMERIE – MAROQUINERIE

**Au SAC PARFUMÉ**

ՏԷՐ ԵՒ ՏՆՕՐԷՆ ԳԵՂԱՄ ԹՈՐՈՍԵԱՆ

վերջին նորաձեւութեամբ ճամբորդական առարկաներ, fantaisie գոհարեղէններ, կիներու պայուսակներ փարիզեան ճաշակով եւ ընտիր serviette-ներ այրերու համար :

ՄԵԾ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԾԱՆՕԹ ՎԱՃԱՌԱՆԻՇԵՐՈՎ ԱՆՈՒՇԱՀՈՏՈՒԹԵԱՆՑ, ԱՄԷՆ ԿԱՐԳԻ

ARTICLES DE PARIS

Gare du Nordի մօտ :

106 Bld. Magenta, Paris (10) Tél.: Nord 05–78

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesmes - (13)

# ԻՆՉ Է «ՀԱՄԱԶԳԱՅԻՆ»Ը

Ապրիլ 11–24ի համազգային տօնակատարութեան մասին պարզելով մեր տեսակէտը, պարտականութիւն նկատեցինք որեւէ ձեւով չծանրացնել նախաձեռնողներու գործը:

Զպատասխանեցինք, մեր կամակոր եւ վատ հակառակորդին զզուելի եւ գրգռիչ արտայայտութիւններուն:

Հանդուրժեցինք «սովետական հայրենասէր» խմբակին այլազան մեքենայութեանց:

Համակերպեցանք տօնակատարութեան չափէն աւելի միակողմանի ծրագրին ալ, հակառակ մեր նախասիրութիւններուն եւ ըմբռնումներուն:

Ըրինք ամէն ինչ վերջապէս, որպէսզի Փարիզի եւ Ֆրանսայի մէջ, հայութիւնը հաւաքաբար կարենար արժանավայել կերպով յարգել իր մէկ ու կէս միլիոն նահատակները:

Այս ամէնը՝ նաեւ՝ յարգելու համար վերապրող սերունդը, որ հակառակ իր ծանր պայմաններուն, ամէն գնով, կ'ուզէ պահել նահատակներու ձգած ժառանգութիւնը:

Հիմա, երբ գրեթէ բոլոր շրջաններու մէջ, վերջացած են Ապրիլ 11–24ի տօնակատարութիւնները, թող ներուի, որ խզենք գիտակցաբար մենք մեզի պարտադրած լռութիւնը:

Զենք ուզեր ծանրանալ տօնակատարութեան կազմակերպութեան մանրամասնութիւններու վրայ, որոնք առարկայօրէն ներկայացուեցան արդէն, այս թերթի խմբագրական սիւնակներուն մէջ:

Անդրադառնանք քանի մը իրողութիւններու:

«Ապրիլ 11–24ը համազգային տօն է» խորագրին տակ, այս միեւնոյն սիւնակին մէջ, 24 Մարտին, կը գրէինք.

— «Համազգային տօնակատարութիւն մը անշուշտ կը պատկանի ազգի հաւաքականութիւնը կազմող բոլոր տարրերուն: Ամէնքը՝ անկախ իրենց դաւանական, քաղաքական եւ ընկերային ըմբռնումներէն, պէտք է որ մասնակցին այդ ձեռնարկին: Ասիկա որքան պարտականութիւն, նոյնքան եւ իրաւունք է ամէն անհատի համար»:

Իբրեւ տրամաբանական եզրակացութիւն մեր այս ըմբռնումին, մենք բնական գրած էինք, ձեռնարկին նախաձեռնութիւնն ալ վստահիլ երեք յարանուանութեանց պետերուն:

Աւելի ճիշդ, որովհետեւ անկարելի է մեր պայմաններուն մէջ գտնել «անվիճելի հեղինակութիւն մը — ըսել կ'ուզենք՝ օրկան մը — ընդունելի բոլորի կողմէ» որպէս համազգային կազմակերպութիւն, կ'առաջարկէինք յարանուանութեանց պետերը:

Իբրեւ հաւատարիմ ուղեկից «սովետական քաղաքականութեան» եւ անոր վարիչ ուժին բարոյական ըմբռնումներուն, մեր դրացի օրկանը, փոխանակ խնդրին մօտենալու այնպէս ինչպէս որ դրուած էր, իր սովորական գռեհկութիւններուն դիմելով, կը փորձէր պաշտպանուիլ ամբոխավարական զէնքերով:

Եւ սակայն խնդիրը կը մնայ անլոյծ: Եթէ անընդունելի էր մեր առաջարկը համազգայինի մասին — անշուշտ Ապրիլ 11–24ի առիթով — անհրաժեշտ էր հրապարակ դնել նորը:

Ճիշդ պիտի ըլլա՞յ ենթադրել, որ մեր «ամենագէտ» դրացին իր պատասխանը չունի:

Ընդհակառակն, ան ունի մէկի տեղ՝ բազմաթիւ պատասխաններ:

«Հայ ժողովուրդը շատոնց դադրած է կրօնական համայնք նկատուելէ: Երեսուն տարիէ ի վեր ան ունի իր պետութիւնը եւ դարձած է պետականօրէն մտածող եւ գործող ժողովուրդ»: (Ա.Խ. 28 Մարտ):

Դիտել տանք անմիջապէս, որ ամբողջապէս ճիշդ չէ այս յայտարարութիւնը: Արտասահմանի՝ մասնաւորապէս Միջին Արեւելեան իսլամական երկիրներու մէջ ապաստան գտած հայութիւնը, կը նկատուի կրօնական համայնք:

Ընդունինք սակայն թէ կրօնական համայնք չենք: Կամ աւելի ճիշդ ըլլայ բաց ըսել, թէ կ'ուզենք մտածել որպէս պետական ազգ, փոխանակ կրօնական համայնքի:

Լաւագոյն պարագային, ընդունինք նոյնպէս թէ ոչ մէկ տարակարծութիւն չունինք այս մասին: Եւ կամ, Դաշնակցութենէն զատ, բովանդակ գաղթահայութիւնը, կապուած Խ. Հայաստանին, «դարձած է պետականօրէն մտածող ու գործող ժողովուրդ մը» եւ կը մտածէ, իբրեւ այդպիսին, ինչպէս կ'ուզէ հաւատացնել նոյն օրկանը:

Եթէ այսպէս է, այդ պարագային ինքնին լուծուած է համազգային ներկայացուցչութեան խնդիրը:

Պետական ազգ մը — երկիր ու պետութիւն ունեցող — այդպիսի պարագաներու մէջ կը ներկայացուի իր պաշտօնական ներկայացուցիչներով:

Խ. Հայաստանի անունով, այս պարտականութիւնը պիտի կատարէր Փարիզի դեսպանը կամ հիւպատոսը: Եւ որովհետեւ գիտենք, որ մեր երկիրը, թէեւ «անկախ եւ ազատ», չունի արտաքին աշխարհի մէջ իր ներկայացուցիչները, Խ. Միութեան ներկայացուցիչներուն են վստահուած մեր երկրին շահերը, որով, նաեւ ներկայացուցչութիւնը մեր պետութեան:

Երբ կը մերժուի երեք յարանուանութեանց շուրջ համախմբուած ազգային զանազան կազմակերպութիւններու ներկայացուցչութիւնը համազգային ընդունիլ, այդ պարագային, փոխանակ դլուխը պատէ պատ զարնելու, պէտք էր յայտարարուէր թէ այդ իրաւունքը վերապահուած է Խ. Միութեան Փարիզի դեսպանին:

Տեւականօրէն խօսիլ «Սովետ. Հայրենիք»ի եւ իր պետականութեան մասին, եւ սակայն անտեսել այս իրողութիւնը, իրական շանթաժէն աւելի, մեծ անարգանք մըն է, ժխտումը՝ պետութեան եւ իր ըմբռնումին:

Սակայն անարդար չըլլանք:

Մեր հարեւանին համար այնքան ալ դիւրին չէ խոստովանիլ ամէն իրականութիւն:

Եթէ դիւրին է, օրինակ, անվերջ գրել եւ խօսիլ մեր սովետական հայրենիքի մասին եւ գաղթահայութեան մեծամասնութիւնը նկատել սերտօրէն կապուած իր հայրենիքին եւ «պետութեան», այնքան ալ դիւրին չէ սակայն, իրական կշիռք տալ այդպիսի յայտարարութեան:

Գաղթահայութիւնը իր իրական ներկայ վիճակին մէջ, դժբախտաբար, հոգեպէս միայն կապուած է հայրենիքի հայութեան հետ, բայց երբեք իրաւապէս:

Ամէնէն ծայրայեղ «Յառաջդիմական»ն իսկ Ֆրանսայի մէջ, եթէ «Ծագումով Հայ Գաղթական» չէ, Ֆրանսայի, Պարսկաստանի, Սուրիոյ, Լիբանանի եւ կամ ուրիշ օտար երկրի մը քաղաքացին է:

Հայաստանի քաղաքացի Հայ, դժբախտաբար չկայ ոչ այս տեղ, եւ ոչ այլուր:

Այս կրկնակի դժբախտ իրողութիւններու հետեւանքով ալ, գաղութներու մէջ, համազգային ներկայացուցչութեան դերը վերապահուած է յարանուանութեանց պետերուն եւ անոնց շուրջ խմբուած ազգային կազմակերպութիւններու ներկայացուցիչներուն:

Մեր դրացին չուզեր խոստովանիլ այս իրականութիւնը:

Զուզեր, ոչ թէ անոր համար որ չի գիտեր, այլ որովհետեւ այդ խոստովանութիւնը, ալ աւելի անիմաստ եւ ծիծաղելի պիտի դարձնէ իր «պետականօրէն մտածող» ուղեղին արտայայտութիւնները:

Ս. ՏԷՐ ԹՈՎՄ.

# ԲԵԿՈՐՆԵՐ ԻՄ ՅՈՒՇԵՐԻՑ

(Արտաւազդ Ատոմեանի յիշատակին)

(Բ. եւ վերջին մաս)

Մի օր պաշտօնական առանձնասենեակս մտաւ մի կայտառ երիտասարդ սպայ, թիկնապահի համազգեստով, ներկայանալի ու զգաստ: Բարեւի կեցաւ ու երկարեց մի նամակ: Արամն էր գրում.

— «Սիրելի Ս., այս երիտասարդը սիրեցի եւ յանձնում եմ քեզ այն յոյսով, որ կը մշակես նրան եւ օգտակար վարչական պաշտօնեայ կը դարձնես»:

Այդ նամակաբեր սպան Արտաւազդ Ատոմեանն էր, որ շուտով դարձաւ մեր սիրելի Արտօն:

Աչքերին նայեցի եւ այն տպաւորութիւնը ստացայ, թէ երկար խօսելու ժամանակ չունի. հրամանների է սպասում, որ թռնի ձիու քամակը եւ սլանայ ...

Իր անցեալի մասին ստուգուեց մօտաւորապէս հետեւեալը.— Ռուսական բանակում Սիլիկեանի համհարզն է եղել, թրքական ռումբը ջարդել է իր աջ թեւի արմուկի ոսկորները: Տարուել է Թիֆլիսի Ֆրանսական վիրաբուժարանը, ջարդուած ոսկորների տեղ արծաթեայ մասեր դնելով՝ թեւը ամբողջացրել են եւ քաջութեան շքանշան պարգեւելով ու հաշմանդամի վկայական տալով՝ բանակից արձակել են: Նշանուել է Բագւում ապրող Երեւանցի Օր. Արուսեակի հետ: Նրանից յետոյ թէ ուր է եղել՝ չեմ յիշում, այն գիտեմ, որ 1918ի աշնան գտնւում է Թիֆլիսում: Երբ իմանում է որ Հայոց Ազգային Խորհուրդը կամաւորներ է հաւաքում՝ Հայաստան ուղարկելիք ռազմամթերքը ապահով տեղ հասցնելու համար՝ Արտօն միանում է այդ զինատար խմբին եւ գալիս է Հայաստան: Նրա հաշմանդամի վկայականը տեսնելով՝ Արամն ուզում է նրան մի «սիվիլ» պաշտօնի դնել, բայց Արտօն մերժում է եւ անպայման ուզում է բանակում ծառայել, յայտնելով թէ աջ թեւը գործում է եւ թէ ինք մեծ փափաք ունի հայ ժողովրդի թշնամիների դէմ կռուելու:

Բժիշկը վկայում է որ թեւը գործածելի է, միայն թէ շատ ցուրտ եղանակներին արծաթեայ մասերը սառելով՝ ցաւեր պիտի պատճառեն: Եւ Արամը որոշում է Արտոյին ինձ մօտ ուղարկել:

Ես էլ որոշեցի նշանակել նրան Աշտարակի շրջանային կոմիսար հետեւեալ նկատումներով.— Նախ որ Արտօն վարչական պաշտօնավարութեան մէջ անփորձ էր, իսկ Աշտարակում մենք ունէինք հանրային գործերի հմուտ ընկերներ, որոնք սիրով պիտի օժանդակէին նրան, արդիւնաւորելու համար նրա գործունէութիւնը: Երկրորդ՝ պահանջ էի զգում առաջին հերթին երեւան հանել ու պատժել Աշտարակի շրջանում բոյն դրած չարագործների այն խմբակը, որ դրանից մի տարի առաջ, երբ ես դեռ Պետերբուրգումն էի գտնւում, Աշտարակի մէջ թիկունքից խփել ու գետին էր տապալել Դաշնակցական անձնուէր մարտիկ եւ Դրոյի կամաւորական գնդի հարիւրապետներից Կարբեցի Յովհաննէս Մելքոնեանին (Օնէ): Տարաբախտ ընկերը Երեւանի Ազգ. Խորհրդի կողմից նշանակուած էր Աշտարակի անդրանիկ հայ կոմիսարը եւ յանդգնութիւն է ունեցել հալածել այդ չարագործներին: Հիմա Օնէի տեղ բռնել էր Աշտարակեցի մի հաստափոր սպայ, որի միակ մտածումն էր իր կեանքը վտանգներից հեռու պահել եւ իր այգիների մշակութիւնը զարգացնել: Լսելով Աշտարակեցիների տրտունջը՝ խոստացել էի տալ նրանց մի արժանաւոր կոմիսար: Յանձին Արտոյի ես գտած էի փնտռածս թեկնածուն: Իմ գրասենեակի պաշտօնեաներից մէկը, որ ծանօթ էր իրաւական հարցերին, նրան իբր քարտուղար յանձնեցի եւ ղրկեցի Աշտարակ:

Կարճ ժամանակի մէջ Արտօն լիուլի արդարացրեց իր վրայ դրուած յոյսերը: Ոճրագործներից ոմանք դիմադրելով ոչնչացան, ոմանք էլ սարսափահար փախան ուրիշ վայրեր, մինչեւ Պարսկաստան:

Արտոյի երեւումով Աշտարակի եւ Ապարանի շրջաններում անդորրութիւնը կատարեալ դարձաւ:

Աւազակութիւններից յետոյ երկրորդ չարիքն էր, ցարական իշխանութիւնից ժառանգ մնացած, պաշտօնեաների կաշառակերութիւնը, որ աղբիւրն էր բոլոր հարստահարութիւնների եւ անիրաւութիւնների: Արտօն վարպետօրէն երեւան հանեց կաշառատուութեան երկու կարեւոր դէպքեր եւ հրապարակային պատժի ենթարկեց իրեն կաշառք բերող տղրուկներին: Այսպիսով դարձաւ շրջանի յարգուած ու սիրուած կոմիսարը:

Նոյն ամիսների ընթացքում էջմիածնի գաւառի միւս շրջաններում էլ բնաջնջուած էին ոճրագործների խմբերը եւ անդորրութիւնը կատարելապէս վերահաստատուած էր: Մեր ուշադրութիւնը կեդրոնացրել էինք Թուրքիոյ կողմից ուղարկուած գործակալների եւ մահմետական գիւղերում հաստատուած զինապահեստների յայտնաբերութեան վրայ: Այդ աշխատանքներն էլ ընթանում էին յաջող, յաճախ մահմետական գիւղացիների բարեհաճ օժանդակութեամբ:

Հիմա էլ Սուրմալուի գաւառը մատնուեց խառնաշփոթ վիճակի, տեղացի մահմետականների եւ Թուրքիայից ներխուժող քիւրտ հրոսակների կողմից: Սուրմալուի գաւառապետ Բաբասեանի խնդրանքին ընդառաջ երթալով, Արտօն ղրկեցի Սուրմալու, ուր ստանձնեց գաւառային միլիցիապետի (ոստիկանապետ) պաշտօնը, զոր ձեռնհասօրէն եւ քաջաբար վարեց մինչեւ 1920ի գարունը, երբ Բագուից Երեւան էր հասել իր շատ սիրած նշանածը՝ Օր. Արուսեակը:

Այդ օրերին ես Երեւանի ոստիկանութեան պետն էի: Արտօն Երեւան էր եկել եւ ամուսնանալու պատրաստութիւններ էր տեսնում: Փափաք յայտնեց որ ես լինեմ իր հարսանեկան քաւորը (կնքահայր): Ասեցի.— Արտօ ջան, քաւոր կը լինեմ, բայց «նկատի ունեցիր, որ նրանից յետոյ էլ ինձ մօտ պաշտօնավարել չես կարող, ընդունուած չէ»:

Կարծեց, որովհետեւ գուշակել էի որ ամուսնանալուց յետոյ դէթ ժամանակի մը համար պիտի ուզենար Երեւանում պաշտօնավարել, մանաւանդ ինձ մօտ, երբ գիտէր որ անելիքներ շատ կային: Ես էլ տրամադիր էի նրան մօտս առնել, միշտ յիշելով Արամի խօսքերը.— «Քեզ եմ յանձնում»: Արամը մեռած էր եւ նրա մահից յետոյ, նրա այդ խօսքերը պատգամի նման էին հնչում ականջիս: Արտօն գնաց վիպասան Վալատ Վալատեանին հրաւիրեց քաւորութեան, ամուսնացաւ եւ կարճ ժամանակից յետոյ մտաւ ինձ մօտ պաշտօնի, քաղաքամասի կոմիսարի հանգամանքով:

Շատ էլ դիւրին գործ չէր այդ օրերին ոստիկանական պաշտօն վարել Երեւանում: Կառավարութիւնն ու կուսակցութիւնը հրամայական պահանջ էին դնում արմատախիլ անել լրբացած «մաւզերիստ» եւ նրան զուգահեռ աշխատող բոլշեւիկ գործակալների խլրդային գործունէութիւնը: Քանի կոմիսարներ պաշտօնից վտարեցի իրենց ապիկարութեան կամ երկչոտութեան պատճառներով: Արտօն միշտ մնաց Հայ Հանրապետութեան հաւատարիմ ու արժանաւոր պահակը, միշտ պատրաստ իր կեանքը վտանգելու, Հայրենիքի թշնամիների դէմ խիզախօրէն ճակատելով:

ԳՐԱԿԱՆ ՎԵՐԼՈՒԾՈՒՄՆԵՐ

# ՍՓԻՒՌՔԻ ԲԱՆԱՍՏԵՂԾՆԵՐԸ

## ՆԻԿՈՂՈՍ ՍԱՐԱՖԵԱՆ

Ցոլարձակ կողմերէն մին կը պատկանի տաղանդին: Հոնկէ կ'արտացոլայ նախ կոչումին նուիրական լոյսը, ու այդ լոյսին տակ արուեստի նուիրումը դէպ ի տաղանդը: Անշուշտ, նուիրում մը գոյութիւն չունէր առանց տաղանդին ինքնագիտակցութեան: Նուիրումը ուրիշ բան չէ եթէ ոչ յարատեւ աշխատանք՝ ստեղծագործութիւնն ու արտայայտութիւնը իրենց բարձրագոյն լինելութեան աստիճանին հասցնելու: Երբ արուեստը՝ զինք ամբողջացնող տարրերով, եւ կամ այդ տարրերուն որոշ մէկ մասովը կը տիրապետէ տաղանդին վրայ, կը դառնայ վտանգաւոր ու վնասակար: Վասնզի տաղանդն է որ կուտայ կենսական շունչ նիւթին ու այդ նիւթով կերպաւորուած գործի մը յօրինուածքին: Եթէ այդ շունչը կը ստորադասուի արուեստին, միջակութիւնը կը դառնայ տիրական գործին էութեան: Հետեւաբար, կը դժուարացնէ անոր հաղորդականութիւնը ու կը կրճատէ անոր տեւական արժէքը:

Արիստոտէլ շատ յստակ կերպով անդրադարձած է այս կէտին վրայ, իր Հռետորութիւն գործին մէջ, մօտաւորապէս հետեւեալ տողերով. —

« Բանաստեղծին յաջողութիւնը ձեռք չի բերուիր միմիայն արուեստով: Անոր ստեղծագործութիւնը արդիւնք է աստուածային ներշնչման»:

Այս գաղափարին վրայ շատ ծանրացած է Արիստոտէլ, հակառակ Քերթողականին մէջ, արուեստի գերազանցութեան մասին իր յանկերգած տուեալներուն:

Orator fit, poeta nascitur: Արդէն այս հին առածէն պարզօրէն կը հասկցուի, ինչ որ մենք ջանացինք բացատրել հոս ընդլայնումներով:

Սակայն արուեստագէտի ձգտումին ու աշխատանքին մէջ, հաղորդականութեան գաղափարը պէտք չէ երբեք դատապարտուի մոռացութեան: Ոչ ալ, ստեղծագործութեան ոգին խաթարելու աստիճան նպատակակէտ մը դառնայ:

Հաղորդականութեան երկրորդ ցոլարձակ կողմը տրամադրուած է ընթերցողին՝ հոգեկան, մտաւորական ու զգայնական արթնութեան ու զարգացման վրայ:

Ընթերցողն է միակ միջոցը, արուեստագէտին փորձառութիւնը վերապրեցնելու, հոն թաքնուած յաւիտենական ճշմարտութեանց իրազեկ մնալու, զանոնք վայելելու, ու անոնց արժէքը ճշդելու:

Անշուշտ, արուեստի գործ մը, արձագանգ չի գտներ ամէն ընթերցողի մէջ, նոյն ուժգնութեամբ ու խորութեամբ, սակայն հաղորդականութեան երեւոյթը կարելի չէ անտեսել որեւէ պարագայի տակ: Արուեստագէտին եւ ընթերցողին միջեւ այդ յաւիտենական կամուրջը, գիտակցութեամբ պէտք է միշտ կանգուն պահել, այլապէս արուեստները կը դադրին ժողովուրդներու մշակութային հարստութիւններ մնալու հանգամանքէն:

Ուրեմն, հաղորդականութիւնը նախապայման սկզբունքներէն մին է արուեստի փիլիսոփայութեան:

Հիմա մօտենանք մեր բուն նիւթին, այսինքն թէ ի՞նչ է արուեստը եւ որոնք են զայն յատկանշող երեւոյթները:

Կարծեմ, ճշդութենէ եւ իրականութենէ շատ հեռացած չեմ ըլլար, հաստատելով թէ, բանաստեղծը ամէն վայրկեան մարդ մըն է, բայց ամէն ատեն բանաստեղծ մը չէ, եւ նոյն տրամաբանութեամբ, չէ նաեւ արուեստագէտ մը:

Մեզի համար տակաւին անլուծելի մնացած գաղտնիքի մը համաձայն, ստեղծագործելու որոշ ժամանակներ ունի ան: Բացառիկ լինելութեան մը վայրկեաններ են անոնք: Բնազանցական ապրում մըն է այդ վիճակը, բոլորովին տարբեր պայմաններու հպատակող, եւ հակոտնեայ իբրեւ մարդ ապրելու բնազդին ու պարագաներուն:

Ան երբ յանկարծ կը գիտակցի յղացումի՝ մը յայտնութեան, արդէն խորհրդաւոր պայմաններու տակ, բաժնուած է իր առօրեայ ապրումներուն հոգերէն ու անփութութիւններէն: Այս վիճակին մէջ, տաղանդն ու արուեստը այնքան հարազատ են ու իսկական որքան իր խզումը կղզիացած է ու խիստ, իբրեւ հասարակ մարդ ապրելու իր բնազդէն:

Հաւանական է եւ նոյնիսկ բնական որ ստեղծագործութիւն մը ծագում առնէ կեանքին բունիսկ մէկ փորձառութենէն, այսինքն բնական ապրումի մը ազդեցութեան տակ ձեւ ու գոյն առած մտապատկերներու ու յետապատկերներու շղթայազերծումով: Սակայն այդ արդիւնքը կը բնորոշուի դարձեալ նորաստեղծ ապրումի մը հանգամանքով: Դարձեալ արուեստն է որ տաղանդին կուտայ այդ նուիրումը, դիւթիչ աշխատանքի մը մթնոլորտին տակ ճգնելու եւ իրագործելու, ազատ՝ ամէն արտաքին ճնշումներէ ու թելադրութիւններէ:

Նպատակ չունիմ արուեստի մասին այս ջատագովուած տեսութիւնները ներկայացնել իբրեւ անժխտելի ճշդութիւններ: Բայց անոնք շատ մը վաւերական արուեստագէտներու եւ նոյնքան վաւերական արուեստագէտ — քննադատներու ըմբռնումներու համադրութենէն բխած, մարսուած ճշգրտութիւններ են, եւ հետեւաբար լուրջ նկատողութեան արժանի:

Ուրեմն, հարցումը կը կրկնեմ դարձեալ,— ի՞նչ է արուեստը:

Արուեստը ուժ մըն է: Ուժ մը որ մարդկային մղիչ կարողութեան երեւակայական արտայայտութեամբը ի յայտ կուգայ: Այդ կարողութեան արուեստանքովը, զգացողութիւնն ու ըմբռնումը միասնականութիւն մը կը կազմեն: Միասնական այս թանձրացումն է որ մարդկային յուզականութեան կուտայ գերազրգռութեան ինքնախոյզ լինելութիւն մը: Ըլլան անոնք ստեղծագործութեան կամ զայն վերապրելու վայրկեաններ, կը բնորոշեն իսկական արուեստը եւ անոր ուժին խորութիւնն ու չափը:

Արուեստի բարձրութիւնն ու մեծութիւնը այն համեմատութեամբ կը ճշդուին որքան ինքնախոյզ յուզականութեան չափն ու խորքը, մտքով ու մարմնով առողջ ընդունուած անհատի մը վրայ ուժգին է ու սաստիկ:

Գեղարուեստի բոլոր ճիւղերուն մէջ, երբ գործ մը կ'արթնցնէ թելադրիչ կամ ներգործիչ մղում մը, այդ՝ արուեստի իսկական գործ մը ըլլալէ հեռու է: Արուեստագէտ մը որ իր ստեղծագործութիւնը կը հպատակեցնէ նոյն այդ թելադրիչ կամ ներգործիչ մղումի ուժերուն, պէտք է նկատել նոյնքան ձախողած տաղանդ մը:

Հետեւաբար, բնական է եզրակացնել թէ, ինքնախոյզ յուզականութիւնը մեծ դեր կը խաղայ արուեստի էութեան ու անոր կատարելագործման շրջաններուն վրայ:

Ի՞նչ նշանակութիւն պէտք է տալ ինքնախոյզ յուզականութիւն բացատրութեան:

Անիկա վայրկեան մըն է, որեւէ մէկ, մտքով եւ կազմուածքով առողջ էակի մը համար, ուր անհատական ապրումի մը գրգռութիւնը եւ պարագաները տեղի կուտան, մոռացութեան կը դատապարտուին ուրիշ ապրումի մը գրգռական երեւոյթներուն:

Արուեստագէտին համար, ստեղծագործութեան վայրկեանն է այս: Այդ վայրկեանին, ան իր ամենօրեայ կեանքին հետ ոչ մէկ առնչութիւն կը պահէ, եթէ իսկական արուեստագէտ մըն է: Իսկ ուրիշի մը համար որ այդ ստեղծագործութեան հետ կը հաղորդուի, ինքնամոռացութեան պահ մըն է, եթէ արուեստի արժէք ունեցող աշխատանք մըն է այդ:

Վերլուծելու այս տրամաբանութիւնը հիմնուած է այն փիլիսոփայութեան վրայ թէ, գեղարուեստները իրենց էութեամբ կը ներկայացնեն իտէալ իրականութիւններ, մինչդեռ կեանքին ամենօրեայ ընթացքը, կարճ խօսքով կեանքը, զուրկ է այդ իտէալ իրականութիւններէն: Այս խորհրդածութենէն պէտք չէ եզրակացնել թէ կեանքը ներշնչումի աղբիւր չէ:

(2)

ԶԱՐԵՀ ԳԱԶԱԶԵԱՆ

ՕՐՈՒԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՀԵՏ

# Փարաւոններու երկիրը երէկ եւ այսօր

Եգիպտական կառավարութեան կողմէ եղած հրաւէրի մը վրայ, ամիսներ առաջ այնտեղ մեկնեցան քաներկու Ֆրանսացի լրագրողներ, ազատ ու անկաշկանդ դիտելու երկիրը, եւ յայտնելու իրենց տպաւորութիւնները:

Պիտի ջանամ «Յառաջ»ի ընթերցողներուն համար ամփոփել այդ թղթակցութիւններուն հիմնական մասերը:

Հազիւ եգիպտական հողը ոտք դրած, լրագրողները կ'առաջնորդուին համբաւաւոր Բուրգերն ու Սփինքսը, հեծած ուղտերու վրայ: Այն բուրգերը, որոնց համար Ֆրանսացի հեղինակ մը գոչած է.— «Որքան փոքր կը զգայ մարդս ձեր առջեւ»:

Այս նոյն բուրգերը դիտելով հեռուէն, մեծ ռազմավարը, Նափոլէոն Ա. կը խրախուսէր իր զինուորները, 1798ի եգիպտական արշաւանքին ատեն. — « Զինուորներ, այս բուրգերու բարձունքէն՝ քառասուն դարեր ձեզ կը դիտեն »:

Մեծ բուրգը շինուած է 2766ին (Ն. Ք.) Քուֆույ Թագաւորին կողմէ, ծանօթ Քէօփս անունով: Եռանկիւնաձեւ հսկայ գագաթէն մինչեւ յատակը ունի 138 մեթր բարձրութիւն: Կրնայ իր մէջ պարփակել՝ Հռոմի Ս. Պետրոս մայր եկեղեցին, Միլանի, Ֆիրենցայի տաճարները: Լոնտոնի Սէյնթ Փոլ եւ Ուէսթմինսթրի աբբայարանները:

Բուրգէն ներս պէտք է մտնել սողալով, կամ դրեթէ ձեռքերով ու ոտքերով կառչելով բազրիքներուն երկար նրբանցքին կպած անվերջանալի սանդուղին, որ կ'առաջնորդէ Փարաւոնին պարապ դամբարանը: Վայրէջքը նոյն ձեւով դէպի ետ ու գլխահակ, փարաւոնին յարգանքի դիրքի մը մէջ:

Այս հնաւուրց ժողովուրդը, որ 7000 տարուան փառաւոր անցեալ պատմութիւն մը ունի, ի՞նչ տեսակ կեանք կը վարէր, բաղդատելով մեր այժմու կենցաղին հետ: Բարեբախտաբար անոնց կենցաղին ու սովորութիւններուն կրնան թափանցել Եգիպտացիները, շնորհիւ վառ մնացած գունազեղ որմանկարներուն, որոնք կը զարդարեն հանգուցեալ փարաւոններուն եւ քիչ շատ դիրքի տէր մարդոց գերեզմանախորշերը: Այդ նկարները կը պատմեն անոնց կեանքին զանազան դրուագներն ու սովորութիւնները:

Համաձայն 32 դարու հնութիւն ունեցող որմանկարի մը բացատրութեան, այր եւ կին առտուն կանուխ կ'ելլէին ու կը լուացուէին: Լուացուելու այս գործողութիւնը կը կատարուէր երկու գլխաւոր ճաշերէն առաջ: Յետոյ կը հագուէին: Այր եւ կնոջ հագուստին միջեւ մեծ տարբերութիւն չկար: Երկուքն ալ բուրդէ ծալծալ երկար շրջազգեստ մը կը հագնէին, բայց կնոջ շրջազգեստը աւելի թափանցիկ կ'ըլլար: Տիկինը ունէր ապարանջաններ ու մատանիներ: Պարոնը ունէր նոյնը, աւելին ըլլալով վիզէն կը կախէր թանկարժէք մանեակ մը: Այրը գլխուն ծանր կեղծամ մը կը կրէր, ու դուրս ելած միջոցին միշտ ձեռքը կը բռնէր հողաթափները, զորս կը հագնէին միայն տունէն ներս: Երկուքն ալ աչքերուն եզերքները կը պատէին կանանչ կամ սեւ բաղադրութիւնով մը, արգիլելու համար աչքի ցաւը: Կ'ուտէին եզան միս եւ հաւեղէն, բանջարեղէն, ձուկ, պտուղ ու խմորեղէններ: Ազգային ըմպելին էր գարեջուրը, թէեւ ունէին գինի ալ որ մեղրի համ ունէր: Կերակուրը կը մատակարարուէր հողէ ամաններու մէջ. ամենահարուստները քարէ պնակներ կը գործածէին: Կ'ուտէին մատներով: Գիտէին հաց եփել ու ալիւրը չարմաղէ անցընել:

Ամուսինը իրաւունք ունէր ծեծելու կինը, չափը չանցնելու պայմանով: Եղբայրն ալ կրնար ծեծել քոյրը: Մեզ հասած աւանդութիւնները կ'ըսեն որ այր մարդը ունի բոլոր լաւ յատկութիւնները, կինը բոլոր թերութիւնները: Անբարոյութիւն ընող կինը մահով կը պատժուէր: Սակայն ոչ մէկ անպատեհութիւն՝ եթէ ամուսինը ըլլար յանցանք գործողը:

Երեխաներուն հանդէպ կը տածէին նոյն զգացումները, ինչպէս այսօր: Անոնք տան մէջ կը խաղային բոլորովին մերկ:

Իբրեւ ժամանց ու զբօսանք ունէին որսորդութիւն եւ եղէգով ձկնորսութիւն: Ժամեր կ'անցընէին տամա խաղալով: Կ'ունկնդրէին նուագախումբերուն, բաղկացած կիթառէ, սրինգէ, տաւիղէ: Լուսաւորութեան համար կը գործածէին ձէթի եւ ռետինի լամբարներ: Կ'ընդունէին հիւրեր, եւն.:

Գանք մեր օրերուն:

Էլ Ազհարի համբաւաւոր մզկիթ – համալսարանը այցելելու համար, պէտք է անցնիլ մեծ շուկայի նեղ փողոցներէն: Առտուն շատ կանուխ, խլացուցիչ աղմուկ կը տիրապետէ այստեղ.— ճիչ, բացագանչութիւն, հայհոյանք: Ու այս բաբելոնին մէջէն, ինքնաշարժները կ'անցնին մեծ դժուարութեամբ, անվերջ փչելով իրենց շչակները:

Շուկան արեւելեան պազար,— բակլայ, նարինջ, պտուղներ: Լուսնաքարեր, զմրուխտ, ոսկի, ու գոհարեղէն ցուցափեղկերու մէջ: Իւրաքանչիւրը իր ապրանքին ներբողը կը հիւսէ բանաստեղծական բացատրութիւններով ու կը ստիպէն յաճախորդը, որ անպայման գնէ: Ցնցոտազգեստ տղեկ մը վզէն կախած է փամփշտակալի ձեւով ապակեայ մեծ տակառանման բան մը, որուն մէջ կը կլկլայ եռացող թրքական համբաւաւոր սուրճը: Կլկլակի վաճառականը ամէն անցնողի բան մը ունի ըսելիք.— « Իմ նարկիլէին ծուխը գլուխդ գագաթը պիտի բարձրանայ, ու այն ատեն իմաստուն խօսքեր պիտի հոսին քու ոսկեղէն բերանէդ»:

Էլ Ազհարի մզկիթը: Քաղաքին աղմուկը կը լռէ անոր դրան առջեւ: Հոս կը լսուի միայն մրմունջը ուսանողներուն, որոնք իրենց դասերը կը սերտեն չափուած քայլերով, քառակուսի մեծ բակին 380 մարմարէ սիւներուն միջեւ: Սուտանի, Թիւրքեստանի, Սուրիոյ, Իրաքի նման հեռաւոր վայրերէ եկած ուսանողներ կան: Շատեր կը հետեւին միայն կրօնական դասերու, Գուրանի ուսումնասիրութեան: Ուրիշներ գիտութեան կամ իրաւագիտութեան:

Համաձայն սովորութեան, թղթակիցները բուն մզկիթը մտնելու կ'արտօնուին, իրենց ոտքերուն անցնելով հողաթափներ:

Եգիպտոսի բնակչութեան թիւն է, մօտ քսան



ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE
HARATCH
Fondé en 1925
R. C. S. 376.286
Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN
17, Rue Damesme — PARIS (13)
Վեցամս 800 փր․, Տար․ 1600, արտ․ 2500 փր․
Tél. GOB. 15–70 Գին 7 փր․ C.C.P.Paris 1678–63
Jeudi 11 MAI 1950 Հինգշաբթի 11 ՄԱՅԻՍ

26րդ ՏԱՐԻ — 26e Année No. 6149–Նոր շրջան թիւ 1560
Խմբագիր՝ Շ․ ՄԻՍԱՔԵԱՆ

ՄԵՐ ԽՕՍՔԸ

## ՓՐԿՈՒԹԵԱՆ ԳՕՏԻՆ ԱՅԴ ՉԷ

*Վերջերս լայնօրէն տեղ տուինք յօդուածաշարքի մը, որ կը շօշափէր այլազան խնդիրներ, Փարիզի Հայոց եկեղեցւոյ վարչական թնճուկէն մինչեւ ցեղապահպանումը :*

*Մեզ առանձնապէս կը հետաքրքրէ վերջին խնդիրը —* Ցեղապահպանում, *որու մասին յօդուածագիրը կը յայտնէ ինքնուրոյն տեսակէտներ:*

*Իր կարծիքով, խարուսիկ են հայերէնի դասընթացքները եւ համանման ձեռնարկներ, Հայկական Արտասահմանի նոր սերունդին փրկութեան համար :*

— « Սփիւռքի մէջ, նոր եւ յաջորդ սերունդներուն, նախ Հայ մնալուն եւ յետոյ ալ հայերէն սորվելուն ճամբան ուրիշ է:

Հայ մնալու իմաստը պէտք չէ առնուի, իբրեւ ցոյցի կամ հոգեկան բաւարարութեան, հայերէն գիտնալ կամ չգիտնալու հարց մը: Այս ձեւով առնել կը նշանակէ նուազեցնել անոր իրական տարողութիւնը: Հայերէն գիտնալը Սփիւռքի մէջ՝ մասնաւորապէս, մեծ առաւելութիւն մըն է անկասկած, բայց Հայ մնացած ըլլալու յատկանիշը չէ: Մենք ունեցած ենք լաւագոյն Հայեր որոնք նախնական շրջանին հայերէն չեն գիտցած: Խանը թրքախօս էր»: (Կ․ Խուպիկեան, 3 Մայիս):

*Այսքան վճռական յայտարարութենէ մը վերջ՝ անշուշտ կը սպասէք աւելի գործնական միջոցի մը, եթէ ոչ նոր գիւտի մը :*

— « Սփիւռքի մէջ ուրեմն Հայ մնալու եւ յետոյ ալ հայերէն սորվելու միակ եւ անվրէպ միջոցը, Հայերու միջեւ բարոյական իրերօգնութեան մթնոլորտ մը ստեղծելու, գործնական առողջ հիմերու վրայ դրուած պարզ կազմակերպութեան մը նախաձեռնութիւնն առնելուն մէջ է»:

*Իր տեսակէտները հիմնաւորելէ վերջ, նախկին ռազմիկը կ'եզրակացնէ թէ «այսպիսի ծրագիր մը կարելի է իրագործել դարերով փորձուած․ համահայկական միակ հաստատութեան՝ Հայ եկեղեցւոյ հովանիին տակ »:*

*Այս հաւատքով ալ, անհրաժեշտ կը գտնէ շարք մը բարեկարգութիւններ, սկսելով Փարիզէն: Կ'առաջարկէ ոչ միայն Եկեղեցին լաւ կազմակերպել, զայն հեռու պահել հատուածական միտումներէ, այլեւ օժտել երիտասարդ վարդապետներով, պարբերաթերթ մը հրատարակել եւն:*

*Ինչպէս կը տեսնէք, այս ծրագիրը շատ ալ տարբերութիւն չունի այն ուղեգծէն, որուն կը հետեւին Մ․ Նահանգներուն մէջ, առաջնորդութեամբ Տիրան եպիսկ․ Ներսոյեանի եւն․:*

*Այս հոսանքն ալ նոր սերունդին փրկութեան գօտին կը փնտռէ Հայ․ Եկեղեցւոյ շրջապատին մէջ, երկրորդական համարելով մայրենի լեզուն:*

*Կը յիշէք իրենց պաշտօնաթերթին՝ Նիւ Եորքի «Հայաստանեայց Եկեղեցի» ամսագրին մէջ հրատարակուած խմբագրականը, որ Ամենայն Հայոց կաթողիկոսութեան սաստին ալ արժանացաւ:*

*Առանց ժխտելու Հայ․ Եկեղեցւոյ վճռական դերը՝ դարերու ընթացքին, ստիպուած ենք անգամ մը եւս յիշեցնել թէ՝ պատրանք է մեծ յոյսեր դնել անոր վրայ, ներկայ պարագաներուն մէջ: Մանաւանդ, Եւրոպայի եւ Ամերիկայի համայնակուլ ափերուն վրայ :*

*Արդարեւ, ի՞նչ կը տեսնենք երկու գաղութներուն մէջ ալ, — մէկը՝ աւելի քան 60 տարեկան, միւսը՝ դեռ 25:*

*Եթէ վերջինը դեռ նոր կը կազմակերպուի, առաջինը արդէն ունի երեք սերունդի ժառանգութիւն՝ իր բազմաթիւ եկեղեցիներով եւ անոնց հետ կապուած հաստատութիւններով :*

*Կարելի է ըսել թէ Թուրքիոյ երբեմնի ամէնէն հայաշատ նահանգին մէջ անգամ ունեցած չենք հոգեւոր հովիւներու այնքան բազմազան շքախումբ մը որքան Մ․ Նահանգներուն մէջ: Եպիսկոպոսներ եւ արքեպիսկոպոսներ: Խումբ-խումբ երիտասարդ վարդապետներ եւ աբեղաներ: «Ներածեալ» քահանաներ: Այլեւ անբաւ հարստութիւն, շարժուն եւ անշարժ ստացուածքներով:*

*Թերեւս ոչ մէկ հայաշատ գաղութի մէջ «Հային Հայուն օժանդակ» եղած է ոչ միայն բարոյապէս, այլեւ նիւթապէս, որքան Հիւս․ Ամերիկայի մէջ: Միշտ ընդ հովանեաւ Հայ․ Եկեղեցւոյ :*

*Արդիւ՞նքը․— Լեզուապատառ կանչեր կ'արձակուին վաթսուն տարի վերջը, ի խնդիր նոր սերունդին փրկութեան :*

*Կ'արժէ աւելի խորանալ :* Շ․

## ՕՐԸ ՕՐԻՆ

### ԱՅՍ ԿԷՏՆ ԱԼ ՃՇԴՈՒԵՑԱՒ

*Ապրիլ 11–24ի սգահանդէսին օրը, բացակայ էր հայ աւետարանական համայնքին ներկայացուցիչը, պատ․ Գ․ Սիսլեան:*

*Այս բացակայութիւնը զարմանք պատճառեց մանաւանդ անոր համար որ, պատուելին մինչեւ վերջին օրը մասնակցած էր կազմակերպիչ յանձնաժողովի նիստերուն :*

*Ծանօթ կեղծարարը փութաց այս պարագան ալ շահագործել․*

— « Վեր․ Սիսլեան ներկայ չէր հանդէսին, հետեւապէս եւ «երեք յարանուանութեանց նախաձեռնութեամբ» կազմակերպուած սգահանդէսը փաստօրէն տեղի ունեցաւ լուսաւորչական եւ կաթոլիկ համայնքներու կրօնապետներու գլխաւորութեամբ (25 ապրիլ):

Ցառաջ *պարտք սեպած էր հրապարակաւ բացատրութիւն պահանջել պատ․ Սիսլեանէ, Ապրիլ 28ի խմբագրականով :*

*Երէկ պատիւ ունեցանք մեր խմբագրատան մէջ ընդունելու այցելութիւնը աւետարանական երէցին, որ յայտարարեց․*

— *« Կը ցաւիմ որ չկրցայ մասնակցիլ Փարիզի Ապրիլեան Սգատօնին, փոքրիկիս շատ ծանր հիւանդութեան պատճառով : Ստիպուած էի մնալ Սէնթ Էթիէն: Նոյն պատճառով չկրցայ նաեւ ներկայ ըլլալ Փարիզի հայ աւետարանական եկեղեցիի պաշտամունքին» :*

*Իրազեկ մը «Ցառաջ»ի հաղորդած էր այս պարագան, բայց խմբագրութիւնը որոշեց որ ճշդումը կատարուի բուն աղբիւրէն:*

*Ահա թէ որքան պարզ է խնդիրը :* ՎԱՀԷ

### ՀԱՄԱՅՆԱՎԱՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԹՈՒՐՔԻՈՅ ՄԷՋ

Պոլսոյ վերջին թղթաբերէն կը քաղենք հետեւեալ տեղեկութիւնները (3 Մայիս)․—

*Գրած էինք թէ համայնավարական ցանց մը երեւան ելած է երկրին մէջ, եւ քննութիւնները մեծ գաղտնապահութեամբ կը շարունակուին: Այսօր կը հաստատուի այս լուրը եւ կը ստուգուի թէ համայնավարական ցանցը տարածուած էր նաեւ Ատանայի, Էրզրումի եւ Իսթանպուլի մէջ :*

*Էրզրումի եւ Ատանայի մէջ կարգ մը անձեր հարցաքննուած եւ հսկողութեան տակ առնուած են, եւ անոնց տուները խուզարկուած են :*

*Իսթանպուլի մէջ ձերբակալուեցան վեց հոգի, որոնք Գեղարուեստից Ակադեմիայի ուսանողներ են: Էրզրումի մէջ ձեռք անցուած են կարեւոր փաստաթուղթեր: Անգարայի մէջ կարգ մը մարդիկ հսկողութեան տակ առնուած են, բայց յետոյ երաշխաւորութեամբ ազատ արձակուած : Այս առթիւ հարցաքննուած է նաեւ քաղաքապետական քննիչներէն Նաճի Սան :*

*Անգարայի մէջ ձերբակալուած է համայնավարական ցանցին պարագլուխ երիտասարդը, որ Էրզրումէն Անգարա եկած էր, իբրեւ այդ կազմակերպութեան ամէնէն գործօն մէկ անդամը :*

*Ատանայի մէջ կատարուած հետապնդումները դեռ արդիւնք մը տուած չեն: Անգարայի մէջ, Մենաշնորհներու վարչութեան շէնքին յարակից պատին վրայ համայնավարական կարգ մը նշանախօսքեր գրուած ըլլալով ձերբակալուած է Արհեստից վարժարանի աշակերտներէն Քէմալ Իտէր:*

*Գրաւուած յայտարարութիւններուն մէջ կան խօսքեր եւ գաղափարներ, որոնք ժողովուրդը կը գրգռեն ընդդէմ կառավարութեան արտաքին քաղաքականութեան: Շատ հաւանական է որ օտարականներ պատրաստած ըլլան այդ թռուցիկները: Ճշդուած է թէ Պոլսոյ վեց կալանաւորները կապ ունէին Անգարայի եւ Էրզրումի համայնավար կազմակերպութեան հետ :*

*ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ Շահին քոյրը՝ իշխանուհի Ֆաթիմէ, որ ամուսնացած էր ամերիկացի ուսանողի մը հետ, քանի մը շաբաթ առաջ, երէկ իսլամական օրէնքով ալ պսակուեցաւ Փարիզի մզկիթին մէջ, նախագահութեամբ Աղա Խանի : Ամերիկացի ամուսինը յանձն առած է ի հարկին իսլամանալ, իշխանուհին չկորսնցնելու համար:*

*ՉԻՆԱՍՏԱՆԻ ազգ․ կառավարութիւնը կը ծանուցանէ թէ երկու հազար համայնավար նաւեր ոչնչացուցած են Ֆորմոզայի առջեւ: — Նախագահ Թրումըն ամբաստանեց Չինաստանի նոր կառավարութիւնը թէ Ռուսաստան կը ղրկէ ուտեստը, սովի մատնելով միլիոնաւոր բնակիչներ :*

*ՄԱՐՍԷՅԼԻ նաւահանգստին մէջ, Ժոլիէթի աւազանին բերանը դրուած գերմանական ական մը յաջողութեամբ հանուելով Ֆրիուլ կղզին փոխադրուեցաւ, ուր պիտի ոչնչացնեն:*

*ՓԱՐԻԶԻ ՏՕՆԱՎԱՃԱՌԸ կը բացուի շաբաթ օր: Կը մասնակցին 25 ազգեր, 10.500 ցուցադրողներով: Այս առթիւ 270.000 լիտր գինի եւ ուրիշ ըմպելիներ պիտի բաշխուին ձրիաբար: Տօնավաճառը հաստատուած է 1904ին: Երկուքուկէս միլիոն այցելուներ կը սպասուին :*

## Ցանդուգն ծրագիր մը

### ՆԻՒԹԱՊԷՍ ԱՆԿԱՐԵԼԻ ԴԱՐՁՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՊԱՏԵՐԱԶՄԸ

*Ֆրանսայի արտաքին նախարարը, Պ․ Ռոպէռ Շուման յանուն կառավարութեան հաղորդեց թէ պիտի առաջարկէ բանակցութիւններ կատարել, Գերմանիոյ հետ միասին յանձնաձեւելու համար երկու երկիրներուն հանքածուխի եւ պողպատի արտադրութիւնը, ընդ հովանեաւ գերագոյն վարչութեան մը որուն կրնան մասնակցիլ ուրիշ եւրոպական երկիրներ: Պ․ Շուման կը յուսայ թէ առաջին առթիւ պիտի միանան Անգլիա, Պելժիա, Հոլանտա եւ Իտալիա:*

*Յայտարարութիւնը խոր տպաւորութիւն գործեց Ֆրանսայի քաղաքական շրջանակներուն մէջ: Մ․ Նահանգները շատ գոհ կ'երեւան: Գերմանիա՝ նմանապէս: Անգլիա որոշ վերապահութիւն կը ցուցնէ :*

*Պ․ Շուման պարզելով իր «յանդուգն եւ շինարար» ծրագիրը, բացատրեց թէ առաջին դրական քայլն է միացեալ Եւրոպան կազմելու համար: Ծրագիրը երկու հիմնական նպատակներ կը հետապնդէ․— 1. Դիւրացնել միացեալ Եւրոպայի կազմութիւնը : 2.— Լուծել Ֆրանսայի եւ Գերմանիոյ դարաւոր կռիւը : Եթէ ծրագիրը գործադրուի, ապագային «աներեւակայելի եւ նիւթապէս անկարելի» պիտի դառնայ պատերազմը :*

*Ծրագրի մասին նախապէս լուր տրուած է Մ․ Նահանգներուն, Անգլիոյ, Իտալիոյ եւ ուրիշ երկիրներու, սակայն բանակցութեանց պաշտօնական հրաւէրները պիտի հաղորդուին աւելի վերջը: Ֆրանսական կառավարութեան կարծիքով, ֆրանքօ-գերման կամ եւրոպական հանքածուխի եւ պողպատի ճարտարագործութեանց միացումը պիտի աւելցնէ արտադրութիւնը, իջեցնելով գիները եւ խափանելով չարաշահութիւնները: Միեւնոյն ատեն պիտի ամրապնդէ ապահովութիւնը:*

— *« Աշխարհի խաղաղութիւնը կարելի չէ ապահովել առանց ստեղծագործ ճիգի, համաձայն սպառնացող վտանգներուն: Կազմակերպուած եւ կենդանի Եւրոպա մը անհրաժեշտ է խաղաղ յարաբերութեանց համար: Աւելի քան քսան տարիէ ի վեր հանդիսանալով ախոյեանը միացեալ Եւրոպայի մը, Ֆրանսայի էական նպատակն եղած է ծառայել խաղաղութեան: Եւրոպան չկազմուեցաւ եւ հետեւանքը եղաւ պատերազմ: Մեր ծրագիրը կը թելադրէ միացեալ Եւրոպա: Եւրոպա մը ուր Ռուրը, Սարը եւ Ֆրանսական հանքերը համախորհուրդ պիտի գործեն, ուր իրենց խաղաղ աշխատանքէն պիտի օգտուին բոլոր Եւրոպացիները անխտիր, Արեւմուտքէն ըլլան թէ Արեւելքէն, եւ բոլոր երկրամասերը, մանաւանդ Ափրիկէն, որոնք Եւրոպայէն կը սպասեն իրենց զարգացումը եւ բարօրութիւնը» :*

*Ծրագրին տրամադրութեամբ, գերագոյն վարչութիւնը պիտի արդիացնէ պողպատի եւ հանքածուխի արտադրութեան միջոցները: Երկու նիւթերը ֆրանսական եւ գերմանական հրապարակներուն վրայ տրամադրելի պիտի ըլլան միեւնոյն պայմաններով: Միասնաբար զարկ պիտի տրուի արտադրութեան: Երկու երկիրներուն մէջ ալ նոյն ճարտարագործութեանց բանուորները հաւասար իրաւունքներ պիտի վայելեն: Պիտի ջնջուին բոլոր մաքսերը հանքածուխի եւ պողպատի վրայ, ինչպէս եւ երկաթուղիներու սակերուն տարբերութիւնը: Նկատելով որ արտադրութեան պայմանները կը տարբերին երկիրէ երկիր, փոխանցման շրջան մը պիտի հաստատուի, մինչեւ վերջնական կարգադրութիւն: Իրաւարար մը պիտի նշանակուի, վէճերը լուծելու համար եւն․:*

*Պ․ Շումանի յայտարարութեան համաձայն, առ այժմ անփոփոխ պիտի մնայ Գերմանիոյ պողպատի արտադրութեան չափը (տարեկան 11.3 միլիոն թոն), իսկ երբ կազմուի Գերագոյն վարչութիւնը, սահմանափակումն ալ պիտի դադրի :*

★ *Արեւմտեան Եւրոպայի պողպատի տարեկան արտադրութիւնն է մօտ 40 միլիոն թոն: (Գերմանիա 9 միլիոն, Ֆրանսա՝ Սարի շրջանին հետ՝ 11 միլիոն թոն): Արեւմտեան Գերմանիան տարեկան կ'արտադրէ 100 միլիոն թոն հանքածուխ․ Ֆրանսան՝ 60 միլիոն, Սարի շրջանով: Արեւմտեան Եւրոպայի հանքածուխի տարեկան արտադրութիւնն է մօտ 450 միլիոն թոն :*

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ․ էջ)

# Պոլսահայ առաջին Մշակութային միութիւնը

Հայ Մշակութային Միութիւններու կամ ընկերութիւններու պատմութիւնը առանձին ուսումնասիրութեան նիւթ կը կազմէ: Զունինք տակաւին համապարփակ երկ մը՝ նուիրուած մեր հին ու նոր Մշակութային Միութիւններու ծագումին, գործունէութեան ու վախճանին: Շատ մը Միութիւններու անունն անգամ անծանօթ մնացած է, թող թէ պատմութիւնը: Պատճա՞ռ: — Կամ հարկ եղած ծանօթութիւնը իրենց մասին չեն տուած, կամ չատ կարճատեւ գոյութիւն են ունեցած եւ կամ իրենց յաջորդող ուրիշ միութիւններ ու անուններ մոռացութեան մատնած են նախկինները:

Ո՞րն եղած է առաջին պոլսահայ Մշակութային Միութիւնը:

Բազմաթիւ ու բազմանուն միութիւններ գոյութիւն ունեցած են Պոլսոյ հայութեան մէջ, յատկապէս ԺԹ. դարու կէսէն աղին: Բայց անոնց հնագոյնը եւ առաջինը կը բարձրանայ մինչեւ նոյն դարու առաջին տասնամեայ շրջանը: 1812ի առաջին ամիսներուն տեղի ունեցած է հիմնադրութիւնը Պոլսոյ հայութեան անդրանիկ մշակութային միութեան, որ կոչուած է — Արշարունեաց Ընկերութիւն: Հիմնադիրն է նոյն ժամանակին հանրածանօթ հայ կաթողիկէ մեծանուն գերդաստանի մը նահապետը — Յովհաննէս Չէլէպի Տիւզեան (ծնած 1749ին, մեռած՝ 1812 Ապրիլին), որուն կենսագրին համեմատ՝ «ճշմարիտ գիտութեան փափաքող» անձ մը եղած է եւ «բազմակողմանի ուսմանց եւ երաժշտութեան մէջ ինքն արդէն կրթուած՝ փոյթ տարած է նաեւ իւր ազգայնոց յառաջադիմութեան» (Հ. Գ. Մէնէվիշեան, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց, Վիէննա 1890, էջ 29):

Յովհ. Տիւզեան եղած է ազգային մեծ բարեբար մը: Ոչ միայն նորոգած է Սկիւտարի եւ ուրիշ թաղային դպրոցներ՝ այլեւ իր անձնական ծախքով հիմնած է երկու դպրոց, մին Կալաթայի մէջ, միւսը Գարթալ: Իբրեւ ուսումնասէր մարդ՝ ան հոգ տարած է օգտակար եւ ուսումնական գրքերու տարածման: Իր ծախքով տպագրել տուած է մեծահատոր գրքեր՝ առանց ուզելու որ իր անունը յայտնուի իբրեւ մեկենաս:

Ահա այս մեծանձն անձնաւորութիւնն է, որ գրքեր տարածելով ազգին յառաջդիմութիւնը դիւրացնելու նպատակով 1812ին Պոլսոյ մէջ կը հիմնէ Արշարունեաց Ընկերութիւնը (Մէնէվիշեան, անդ՝ էջ 21): Այս մասին կ'ակնարկէ Բանասէր (Կ. Պ. 1851 Թ. 4, էջ 161), գրելով. «...Հոս կը գտնենք պզտիկ, բայց սքանչելի հատուած մը, որն որ քառասուն տարի ասկէ առաջ ճշմարիտ ազգասէրի մը գրածն է, երբ օգտակար գրքեր տպելու ընկերութիւն մը կը հաստատէր ազգերնուս մէջ... աղնիւ յիշատակ մը ան ազգասէր եւ ուսումնասէր մարդուն, որուն անունը ամէնուն ծանօթ է եւ ամէն յարգութիւն կ'արժէ »:

Բանասէր ինքն ալ կը հաստատէ «Արշարունեաց Ընկերութեան» առաջին ըլլալը, երբ կը գրէ.

— « Հիմակ գանք ընկերական մտաց հետքն մեր մէջը քննելու: Ընդհանրապէս աս վերջին դարուս առեննէ որ սկսաւ ուսումնական ընկերութեանց ճաշակը ազգերնուս մէջ մտնել, թէպէտ գործադրութիւնը միշտ յամր եւ չատ անգամ անարդիւն մնաց: Առջի ուսումնական ընկերութիւնը կը սեպենք անիկայ որ հաստատուեցաւ ի Կոստանդնուպոլիս յամին 1812 եւ որուն նպատակն էր օգտակար գրեանք հրատարակել» (անդ՝ Թ. 12, էջ 547—8):

Նոյն ընկերութեան մէկ ճառախօսը, որ Յ. Տ. (թերեւս Յակոբ Տիւզեան) կը ստորագրէ՝ կ'ընդգծէ նոյնպէս թէ. «Ընկերութիւն այսպիսի կարծեմ թէ ո՛չ երբեք եղեր էր մեր ազգին մէջը» (Դիտակ Բիւզանդեան, Վենետիկ 1813 Յունուար, Թ. 1, էջ 8):

« Արշարունեաց ընկերութեան» հիմնադրութեան մէջ գործօն դեր ունեցած են 2 երիտասարդ Տիւզեաններ եւս, Յակոբ Չէլէպի եւ Մկրտիչ Չէլէպի (Ազգասէր, Վենետիկ 1815, էջ 4): Անոնց մասին տես Տիւզեանց վերոյիշեալ գիրքը (էջ 31 եւ 35 — 39):

Ժամանակակից հայ թերթը՝ Դիտակ Բիւզանդեան (1813 Թ. 1, էջ 6) հետեւեալ կերպով կը ներկայացնէ ընկերութեան հիմնադրութիւնը. —

« Մեր ազգին մէջ հոգեւոր գովելի եղբայրութիւններ եղաւ, բայց ընկերութիւն մը չի կար. աս ԺԹ. դարուն սկիզբը, տեսնուեցաւ Ստանպօլի մէջ մէկ նախանձելի ընկերութիւն մը՝ որ մէյտեղ խօսք դրած են, որ ձեռվներնէն եկածին չափ ջահդ ընեն, ստակ՝ խարճ չինային, որչափ պէտք ըլլայ տան, որ եղած ուսումնական գրքերուն վըրայ, տահա այլ նորանոր գրքեր չինել տան գիտնոց, ու տպել տան, որով որ ազգը պարէ ան չատէն քիչը կարդայ սորվի, իմաստութեան անուչ համը առնէ »:

Առաջին տարին ընկերութիւնը կ'ունենայ 40—45 անդամ: «Դիտակ Բիւզանդեան» (անդ՝ էջ 6) կ'լսէ որ օրէ օր կ'աճէր այդ թիւը եւ մեծ յոյս կար որ հաստատ մնայ եւ տեւէ:

Ընկերութիւնը չափազանց օգտակար եղած է հայութեան համար: Ան ստանձնած է «Դիտակ Բիւզանդեան» երկշաբաթաթերթի ամբողջ ծախքը՝ խմբագրութիւնը յանձնելով Վենետիկի Մխիթարեանց (Հ. Գ. Գալէմքեարեան, Պատմութիւն հայ լրագրութեան, Վիէննա 1893, էջ 30—31): Յետոյ տպագրել տուած է Ազգասէրը եւ ուրիշ գրքեր (Բանասէր, անդ՝ էջ 548): 1815էն վերջ իր վրայ առած է նաեւ Վենետիկի Մխիթարեանց Եղանակ Բիւզանդեան տարեթերթին ծախքը (Գալէմքեարեան, անդ՝ էջ 28):

« Արշարունեաց ընկերութիւնը » , հակառակ իր կարճատեւ գոյութեան, մեծ ծառայութիւն մատուցած է հայկ. մշակոյթին՝ ոչ միայն գրքերու եւ թերթերու տպագրութեամբ, այլեւ օրինակ հանդիսանալով հայութեան՝ մշակութային գետնի վրայ հաւաքական աշխատանքի ու միութենական գործունէութեան: Իր օրինակը վարակիչ եղած է յաջորդ սերունդներու համար ու եւեւէ ետեւ ծիլ արձակած են զանազան տեղեր, այլեւայլ Միութիւններ:

« Արշարունեաց Ընկերութեան » գոյութիւնը տեւած է, հաւանօրէն, մինչեւ 1819: Բանասէր կը գոհանայ գրելով.— «Շատ չիքչեց սակայն աս ընկերութիւնը»: (Անդ՝ էջ 548):

Հ. Ե. ՊՕՂՈՍԵԱՆ

# ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ

ԽՄԲ.— Այսօր, կիրակի, Սոպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ, տեղի կ'ունենայ Արշակ Չօպանեանի գրական գործունէութեան 65ամեայ յոբելեանը: Այսօր կուտանք իր կեանքն ու գործը, յետոյ հանդէսին նկարագրութեան հետ՝ Շ. Նարդունիի ճառը:

## ԿԵԱՆՔԸ

Չօպանեան ծնած է 15 Յուլիս 1872ին Պէշիքթաշի մէջ: Հայրը, Յովհաննէս, ճարտար ոսկերիչ մը, Ակնցի: Մայրը, Մարիամ Քէմհաճեան, Սամաթիացի::

Արշակ մէկ ամսու էր՝ երբ մայրը մեռաւ: Հայրը կրկին ամուսնացաւ: Խորթ մայրը, Ագապի, հարազատ մօր մը գուրգուրանքով մեծցուց Արշակը, որ եօթը տարեկանին մտաւ Մաքրուհեան վարժարան: 1887ին գնաց Կեդր. վարժարան, որ հիմնուած էր տարի մը առաջ: Մինաս Չերազ տնօրէն էր: Տեսնելով Չօպանեանի բանաստեղծութեանց երկու տետրակները, քաջալերեց պատանի քերթողը,— Չօպանեան, արդէն, կ'երեւէր Բուրաստան Մանկանցի մէջ 1885ին իր առաջին ոտանաւորներով: Առաջին խրախոյսը կուտար Ս. Թղլեան՝ Մաքրուհեան վարժարանին մէջ: Իր հօրեղբօր՝ Յարութիւն Չօպանեանի մատենադարանը աւելի եւս հրահրեց քերթողական կայծը, իսկ Կեդրոնական վարժարանը, իր մեծ ուսուցիչներով (Թ. Թէրզեան, Ե. Տէմիրճիպաշեան, Մ. Գարագաշեան, Օրմանեան, Սրուանձտեանց) բոց տուաւ այդ կրակին:

Աշակերտ Կեդրոնականի, սկսաւ ֆրանսերէնէ թարգմանութիւններ ընել եւ հրատարակել Արեւելքի մէջ: 1889ին Արփիարեանի եւ Բաշալեանի թերթին մէջ ծանօթ անուն մըն էր այլեւս ոչ միայն իր թարգմանութիւններով, այլեւ իր նորավէպերով, հէքեաթներով ու «ֆանթէզի»ներով (Զորքոտանւոյ մը օրագիրը):

Կեդրոնականէն չրջանաւարտ, Չօպանեան երեւան եկաւ նաեւ իբրեւ քննադատ: Հայրենիքի մէջ կը հրատարակէ ուսումնասիրութիւններ Մօփասանի, Թէնի, Լօթիի վրայ, միաժամանակ արձակ եւ չափածոյ բանաստեղծութիւններ, ինչպէս եւ հէքեաթներ, որոնք ժողովրդական աւանդութիւններ չէին, այլ իր յղացումները:

Քննադատի իր նկարագիրը համերաշխօրէն զարգացաւ Արփիարեանի Հայրենիքին գրական վարդապետութեան հետ,— հաւատարիմ մնալ կեանքին եւ իրականութեան: Այնպէս որ պայքար բացաւ հետտորական գրականութեան դէմ, պաշտպանեց աշխարհաբարը եւ արթնցուց վերաքննութեան ոգին՝ աշխատելով թափանցել իր ուսումնասիրութեան առարկաներուն մէջ:

Հայրենիքի, Արեւելքի, Մասիսի իր աշխատակցութեանց համընթաց՝ իբրեւ յառաջապահ եւ նորաշունչ գրականութեան տեսաբան, գործեց նաեւ իբրեւ ուսուցիչ՝ դասախօսելով Կեդրոնականի, Գատըգիւղի եւ Սամաթիոյ ազգ. վարժարաններուն մէջ:

1891ին լոյս տեսաւ իր առաջին գիրքը, Արշալոյսի Ձայներ, ուր ամփոփուած էին իր արձակ եւ ոտանաւոր ստեղծագործութիւնները: Նոյն տարին հրատարակեց նաեւ Թուղթի Փառքը, փոքր վէպ մը, իսկ յաջորդ տարին՝ Թրթռումներ, բանաստեղծութեանց նոր փունջ մը: 1893ին գրեց թատերախաղ մը, Մութ խաւեր, Պոլսոյ Հայոց կեանքէն, որ ներկայացուեցաւ Պոլսոյ արուարձաններուն մէջ եւ հասոյթովը, 100 ոսկի, որուն վրայ հայրը եւ բարեկամները փոքրիկ յաւելումներ ըրին, Չօպանեան իրագործեց իր երազը,— տեսնել Փարիզը: 1893ի ամառը՝ կը հասնի Փարիզ, յետոյ կ'անցնի Լոնտոն, Պրիւսէլ եւ Անվէրս: Կը հետեւի գրական շարժումներուն, կը ծանօթանայ հռչակաւոր գրողներու հետ (Զօլա, Տօտէ, Քոփէ): Այդ շրջանին կը շարունակէ աշխատակցիլ «Հայրենիք»ի, ու միաժամանակ կը պատրաստէ Պետրոս Դուրեանի կենսագրութիւնը, զոր Թիֆլիզի Հրատարակչականը տպագրեց 1894ին:

1894ի աշնան, Չօպանեան վերադարձաւ Պոլիս, ուր նուիրուեցաւ դարձեալ գրական եւ ուսուցչական գործունէութեան: Կեդրոնականի մէջ կ'աւանդէր գրականութեան պատմութիւն: Այդ շրջանին էր, որ հիմնեց Ծաղիկ կիսամսեայ հանդէսը, ուր երեւցան Զ. Եսայեան, Վ. Թէքէեան, Ռ. Զարդարեան, Յ. Մրմրեան իրենց նախափորձերով: Այդ հանդէսն էր դարձեալ որ ժամադրավայր մը դարձաւ բոլոր ծանօթ գրողներուն,— Հրանդ, Թլկատինցին, Աղ. Շաքլեան, Որբերեան, Զրաքեան, Տոքթ. Քօլօլեան: Այդ հանդէսին մէջ էր, որ լոյս տեսան Չօպանեանի ամէնէն կարեւոր ուսումնասիրութիւնները Նարեկացիի, Պարոնեանի, Կոնքուրներու, միստիքականութեան, Հիւսիսի գրականութեանց, Փիէր Քիյարի բանաստեղծութեանց մասին:

Մեծ ընդունելութիւն գտաւ Ծաղիկը, որուն ծրագիրն էր մշակել հայ ֆօքլորին վերաբերեալ նիւթեր, հաւաքել աւանդութիւններ, հէքեաթներ, բարբառային պատառիկներ, եւ առիթ տալ դաւառացի նոր գրողներու երեւման: Երկար չշարունակուեցաւ սակայն այս գործը,— 1895ի կոտորածները սկսած էին, միւս կողմէ եւրոպական թերթերու իր աշխատակցութիւնը կասկածելի կը դարձնէին զինքն ալ: 1895ի Դեկտեմբերին հեռացաւ Պոլիսէն եւ հաստատուեցաւ Փարիզի մէջ, ուր հիմնեց Անահիտը (1898 Նոյեմբեր), նոյնքան փառաւոր հանդէս մը, կապ հաստատեց Կովկասի եւ այլ գաղութներու հայ թերթերուն հետ, դասախօսութիւններ տուաւ ֆրանսերէն, մտերմացաւ եւրոպացի մտաւորականներու հետ՝ միշտ արծարծելով ազգային փրոփականտը:

## ԳՈՐԾԸ: Ա.— Հայերէն:

Հատորով հրատարակած է հետեւեալ գիրքերը, (կը յիշատակենք միայն գլխաւորները).—

1.— Նահապետ Քուչակի Դիւանը, ծանօթութիւններով եւ ներածութեամբ մը (1902):

2.— Քերթուածներ եւ ճառեր Մկրտիչ Պէշիկթաշլեանի, ծանօթութիւններով եւ քննական ուսումնասիրութեամբ մը (1904):

3.— Մկրտիչ Պէշիկթաշլեանի կեանքն ու գործը, կենսագրութիւն եւ գրական վերլուծում (1907):

4.— Քերթուածներ, փունջ մը 123 բանաստեղծութեանց (1908):

5.— Նաղաշ Յովնաթան աշուղը եւ Յովնաթանեան նկարիչը, պատկերազարդ, ծանօթութիւններով եւ ուսումնասիրութեամբ մը (1910):

6.— Հայ էջեր, հաւաքածոյ հայերէն հին տաղերու, պատկերազարդ (1912):

7.— Տղու հոգիներ, պատմուածքներ (1923):

8.— Դէմքեր, ուր կ'երեւին Նարեկացի, Մխիթար Աբբայ, Արովեան, Ալիշան, Այտընեան, Խըրիմեան, Կոմիտաս, Թէրզեան, Սունդուկեան (1924): Երկրորդ հատոր մը 1929ին:

9.— Հայրենի Քնար, արձակ եւ ոտանաւոր (1925):

10.— Մեր գրականութիւնը, գրքոյկ մը, որով ընդհանուր ակնարկ մը կը նետէ մեր արդի գրական կեանքին վրայ (1926):

11.—Հայ ազգը մեղաւոր չէ, գրքոյկ մը որ պատասխանն է Փարիզի հայ համայնավարներու օրկանին չարք մը յօդուածներուն (1926):

12.— Հատընտիր էջեր Քուչակեան տաղաշարքէն, ներածութեամբ եւ տաղիկներու արդի աշխարհաբար թարգմանութեամբ (1926):

13.— Երկրաշարժը արտասահմանի մէջ, գրքոյկ մը որ կը բովանդակէ Պայքար թերթով հրատարակած իր յօդուածները, Ամերիկա այցելութեան ժամանակ գրուած (1926):

14.— Հայրէններու Բուրաստան, ստուար հատոր մը, որ կը բովանդակէ Քուչակեան տաղաշարքը ամբողջութեամբ, սկիզբը՝ ներածութեամբ, մը (1940):

15.— Կեանք եւ Երազ, պատմուածքներ (1942):

## Բ.— ՖՐԱՆՍԵՐԷՆ.—

1.— Les Massacres d'Arménie, Ժորժ Քլէմանսոյի յառաջաբանով (1896):

2.— L'Assasinat du Père Salvatore, Չէյթունի մօտ սպաննուած իտալացի կրօնաւորի մը ողբերգական վախճանը, Աղասիի յուշերէն առնուած, Փիէր Քիյարի յառաջաբանով:

3.— L'Histoire de Zeïtoun, Աղասիի յուշերուն թարգմանութիւնը, Վիքթոր Պէռարի յառաջաբանով (1897):

4.— Poètes Arméniens Anciens et Modernes, կազ—

## ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՐՁԱՆԻՆ ԱՌՋԵՒ

Չէ՛, մահարձան չէ, այլ կամք ու կորով
Զըքնաղ երազի հասած ուխտաւոր ,
Անդրանիկն է ան, ձին ամպաբլաց
Բոցերու վըրայ քալող մէկ աստուած :

Կատարներ կ'ուզէ արձանն իսկ կարծես ,
վե՛հ լերան կողեր ու շաչող սուրեր ,
Անդրանիկն է ան, զօրավարն Հայուն
Խըրոխտ ու հըպարտ, նըման սարերուն :

Չէ՛ մեռած հուրը իր սըրտի կանչին,
Աչքերն են արեւ, իր իղձը մեկին ,
Անդրանիկն է ան, քուրմն ազատութեան ,
Արծիւը Հայուն, անխոնջ ախոյեան :

Ցաւերժին նայող նայուածքը ներհուն,
Կ'որոնէ անվերջ, լոյսերը կեանքին ,
Անդրանիկն է այն, մըտքի առեղծուած
Գորդեան հանգոյցներ, իրմով են լուծուած :

Ցարանուն սիրով պատուանդանն ի վեր
Հէքեաթի խաղը թո՛ղ քակուի հիմակ ,
Անդրանիկն է ան, հայ ուժի արքան ,
Թո՛ղ բացուին աչքերն , տեսնէ՛ Հայաստան :

ՆԱԶԵՆԻ ՏԷՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

## Կ. ԽԱՉԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆՆԵՐԸ

*Ամէն անգամ երբ առիթ կ'ընծայուի ինծ գրել Ֆր. Կապոյտ Խաչի մասին, մեծ հրճուանք մը կը զգամ: Անշուշտ դժուար պիտի ըլլար ինծ համար արտայայտուիլ, եթէ մօտէն ծանօթ չըլլայի իր գործունէութեան եւ բազմապիսի ձեռնարկներուն:*

*Քառասնամեակի տօնակատարութեան առթիւ, այսօր աւելի քան երբեք, մեր յարգանքն ու գիտակցութեան զգացումները կը խորանան այս մեծ կազմակերպութեան հանդէպ որ, տարիներէ ի վեր փրկարար դեր մը կատարած է, սրբելով հազարաւոր դժբախտներու արցունքները: Ան իր նիւթական եւ բարոյական ուժերը կեդրոնացուց մասնաւորաբար օդափոխութեան կայաններու վըրայ, ուր հարիւրաւոր անճար մանուկներ կը կազդուրուին վայելելով ամէն խնամք եւ հոգածութիւն :*

*Այսպէս, Ալպեաններու մէջ հաստատուած կայանը, անցեալ տարի իր հինգերորդ շրջանը բոլորեց շնորհիւ գերագոյն ջանքերու :*

*Ինչպէս ուրիշ առթիւ նկարագրուած է, շէնքը կը գտնուի կանանչազեղ բլրակի մը վրայ, շրջապատուած բնական հրաշալիքներով: Կը լրացնէ առողջապահական բոլոր պահանջները: Մեր սիրասուն փոքրիկները նախանձելի արձակուրդ մը անցընելէ վերջ, կը բաժնուին ակամայ, երախտագիտական արցունքներով :*

*Կայանը, կազդուրման կայան մը ըլլալէ զատ, եղած է նաեւ բարոյական դպրոց մը հայ մանուկին, անոր մատաղ հոգւոյն մէջ ներարկելով ազգային ոգի եւ զգացում :*

*Սիրելի հայրենակիցներ, բոլորս միասնաբար գիտնանք չթերանալ մեր սրբազան պարտականութեան մէջ, աջակցելով Ֆր. Կապոյտ Խաչին, որուն այնքան պէտք ունի հայ կարօտեալը :*

ԶԱՊԷԼ

## ՊՈՒՏ'Մ ԾԻԾԱՂ

### « ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԵԱՅԼԱ ... »

« Եայլա ջան եայլա, սէր – օրեր եայլա, եայլա ջան եայլա···»: *Շարունակութիւնը դուք երգեցէք :*

*Համբարձման տօն էր անցեալ Հինգշաբթի :*
*Վիճակի տօն Հայոց աշխարհում :*

*Հայոց ներկայ աշխարհին մէջ այսօր տեղի կ'ունենա՞յ կրկին այդ տօնը: Տեղեկութիւն չունիմ :*

*« Անծանօթին գաղտնիքները, ոչ դուն գիտես եւ ոչ ալ ես···»*

*Անշուշտ ամէնքիդ ծանօթ է: Մեր լուսադրիչ եւ ամենասիրուած բանաստեղծ Յովհ. Թումանեանի տաղանդին կը պարտինք «Անուշ» երգախաղը, որուն հատուածներէն է «Համբարձում եայլա»ն :*

*Օրհնեալ ըլլայ յիշատակը: Երկնքի հրեշտակներուն երաժշտախումբերը թող երգեն իր « Անուշ »ը ···*

*Եւ սակայն, ո՛վ երանելի Թումանեան, Հայոց բառագրքին մէջ բա՞ռ կը պակսէր որ* եայլա*ով ու «ջան»ով ատաղձեր ես սա անուշիկ « Անուշ»դ ···*

*Գոնէ դուն, «Ամենայն Հայոց բանաստեղծ»դ քիչ մը մաքրակրօն ըլլալու եւ խնայելու էիր « Անուշ»իդ, փոխանակ զարդարելու զայն թաթարակերտ, թրքաշէն բառերով :*

*Բա՞ռ կը պակսէր Հայոց բառարանին մէջ , Անուշին ճակատը պճնելու՝ զուտ հայկական ծաղիկներով, առանց թուրք–թաթար փուշերու ···*

*Մեր այս սիրուած թատերգութիւնը (օփերէթ) գոնէ զերծ ըլլալու չէ՞ր օրոմներէն, ո՛վ մեծըդ Լոռեցի գուսան :*

*Միայն «եայլա՞»: Եթէ հաւաքենք միւս թաթարեղէններն ալ, աղուոր փշափունջ մը կ'ունենանք:*

« Զահիլ, բօյիդ, իգիթ, չօլեր, ամա՜ն, անգիւման,եար—*որքա՞ն կ'ուզէք*— հօնգուր,եարար, չիգեար, ջան գիւլիւմ, դարտ, ղամէ (*դաշոյն*) , խանչալ, եսիր, չոքած, բեզարած, բալքի :

*Մաս մըն ալ դուք հաւաքեցէք եթէ կ'ուզէք ճոխացնել վերի բառարանը :*

*«Եար»ն ու «ջան»ը կարելի՞ է փոխարինել «սիրուհի»ով եւ «հոգեակ»ով: Տարբեր համ–հոտ ունին նրանք:*

— Լազաթ *են տալի,* լազա՛թ *մեր աշուղերգութեան »:*

*Դուք, արեւմտահայերդ չէք իմանում էդ բանը:* Նացիոնալիստական տենդենցով *էք վարակուել» պիտի մեղադրեն մեզ, մեր արեւելահայերը:*

*Իրաւունք ունին : Թերեւս: Այսօր կրկին, հայ լեզուն ,գաղթավայր է դարձեր Հայաստան Խորհրդայինի մէջ: Թաթար բառերը տեղ տուած են լատինարմատ ռուս բառերու: Այս անգամ օրէնքով պարտադրուած մեզի՝ յանուն ազգերու եղբայրակցութեան ···*

*Ուրեմն երգենք, առայժմ, «*Համբարձում եայլա, եայլա ջան եայլա: Սէր – օրեր եայլա, եայլա՛ ջան եայլա··· *Մինչեւ որ կազմուի «Հայ լեզուի Անկախութեան Մարմին»ը՝ առընթեր Հայ Քաղաքական Անկախութեան Մարմնի ···*

Կ. ՊԵՏՈՒՇ

## ՍԱՅԱԹ ՆՈՎԱՅԻ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵՐԵԿՈՅԹ ՄԸ

*Փարիզահայ – Լսարանը շեղում մը կատարած էր իր սովորական ծրագրէն: Անցեալ ուրբաթ երեկոյ (13 Մայիս), ընտրեալ բազմութիւն մը Սասունիի ճաշարանին վերնայարկը փութացած էր , Սայեաթ – Նովայի կեանքին ու գործին նուիրուած դասախօսութիւն – երեկոյթին մասնակցելու համար :*

*Տիկին Տիգրանուհի Կարապետեան բանալով երեկոյթը, ներկայացուց օրուան դասախօսը, Տիկին Հ. Խոնդկարեանը, որ ծնած ու ապրած Թիֆլիս, Սայեաթ Նովայի հայրենի քաղաքին մէջ , շատ կանուխէն սիրած ու երգած է մեծ աշուղին տաղերը, հետաքրքրուած է անոր կեանքով ու մանաւանդ լսած ու հաւաքած հետաքրքրական աւանդութիւններ ու դրուագներ :*

*Սայաթ Նովա երգած է կովկասեան երեք լեզուներով: Անոր երգերուն մեծ մասը տեղական թուրքերէնով երգած են, 60ի մօտ երգեր Հայերէն են եւ աւելի քիչ թիւով վրացերէն: Ըստ վրացի մասնագէտներու Սայեաթ Նովայի հայերէն տաղերը ամէնէն յաջողներն են, թէ բովանդակութեամբ թէ յանգերու ճոխութեամբ : Սայեաթ Նովա ապրած ըլլալու է 1710 — 1795 թուականներուն, ուրեմն գրեթէ մէկ դարու կեանք մը:*

*Վրաց թագաւորը լսելով Սայեաթ Նովայի համբաւը, զայն հրաւիրած է իր պալատը, ուր 1750 — 60 թուականներուն ան դարձած է թագաւորին մտերիմն ու խորհրդականը :*

*Ու շատ վիպական կեանք մը կը սկսի հայ աշուղին համար արքայական պալատին մէջ, ուր Սայեաթ , եթէ հիացողներ կ'ունենայ, կ'ունենայ նաեւ նախանձորդներ եւ թշնամիներ :*

*Եթէ հաւատանք զանազան զրոյցներու, Սայեաթ Նովա կը սիրահարի թագաւորի աղջկան: Սէր անխոստովանելի, իր հոգւոյն մէջ թաքուն , որ անդադար աւիւն կուտայ իր տաղերուն: Այս շրջանին է որ ան կը յօրինէ իր գմայլելի տաղերը, ուր կ'երգէ իր սիրածի շնորհները : Ի վերջոյ Սայաթ Նովայի դէմ կը դաւեն պալատականները, գրգռելով թագաւորը: Սայաթ Նովա կը փրկուի թագաւորի ցասումէն, երգելով իր երգերէն ամէնէն փիլիսոփայականը . —*

«Դու էն գլխից, իմաստուն իս»ը:

*Բայց եւ այնպէս աշուղը կ'արտաքսուի պալատէն: Իր կնոջ մահուան վրայ կը քաշուի Հաղբատի վանքը, իբրեւ կրօնաւոր ապրելով իր կեանքի վերջամասը :*

*Ըստ աւանդութեան Սայեաթ Նովա տեղն ու տեղը կը նահատակուի աղա Մահմատ խանի մոլեռանդ զինուորներուն կողմէ, երբ կը մերժէր դուրս ելլել Թիֆլիսի Ս. Գէորգ եկեղեցիէն, մըմնջելով իր կարապի երգը.—* « Զըխմանամ քիլիսատան, դոնմանամ Իսատան»: (Եկեղեցիէն դուրս չեմ ելլեր, հաւատքս (Քրիստոսը)չեմ ուրանար):

*Տիկին Հ. Խոնդկարեան պահ մը փոխադրեց մեզ ԺԸ. դարու մթնոլորտին մէջ , իսկ Յովսէփ Դաւիթեան իր* քէմէնչէով *տուաւ երանգները Սայեաթ Նովայի, մինչ Տիկինը սկսաւ ընկերանալ* քէմէնչէին, *իր գմայլելի ձայնովը :*

*Երեկոյթին փայլը աւելցուցին ներկայ երգչուհիները.— Օր. Ա. Առաքելեան, Տիկին Աչխէն Զրուանդեան–Սողոմոնեանց, Տիկ. Ցակոբեան եւ*



# ՄԵԼԻՔԻ ԱՂՋԻԿԸ

ԺԲ.

*Բայց ամբոխը մի առանձին տագնապի մէջ չէր: Անհոգի, ցուրտ մի զանգուած էր նա եւ մինչեւ անգամ անհամբերութեան նշաններ էր ցոյց տալիս: Լուր էր պտտում, որ ցցի հանուողը թէեւ Մանասի մարդկանցից է, բայց անյայտ օտարական է, Վարանդացի չէ, եկել է մի հեռու տեղից: Օտարը օտարին կարեկից չէ. այս անողորմ օրէնքը այժմ ամբոխի մխիթարութիւնն էր: Գոնէ իմանում էին, որ սպաննուողը օտար է, ուրեմն կարելի էր նայել առանց ցաւակցութեան, առանց լացի, նայել այնպէս, ինչպէս փողոցում հաւաքուածները դիտում են թէ ինչպէս ընկած ձին կամ եզը փչում է վերջին շունչը :*

*Ժամանակն անցնում էր, իսկ սպասողների համբերութիւնը գնալով սպառւում էր: Լեռնային քմահաճ բնութիւնը սկսեց մի քանի զարմանալի փոփոխութիւններ, մշուշը չքացաւ լեռներից, երկնքի ամպերը յանկարծ ծուէն ծուէն դարձան եւ արեգակը մի քանի տեղ ճառագայթներ թափեց խոնաւ ու սառած երկրի վրայ :*

*Կարծես հէնց դրան էր սպասում Սուլէյման Բէկը :*

*Նա դուրս եկաւ տանից. ծալապատիկ նստեց գորգերի վրայ առանձին պատրաստած տեղը, իսկ նրա շուրջը բազմեցին պատուաւոր հիւրերը: Ամէն տեղ տիրեց մեռելային լռութիւն: Մարդիկ չէին համարձակւում նոյնիսկ շունչ քաշել :*

*Բէկը կարգադրութիւններ արաւ, բայց այսօր նա չափից դուրս դանդաղկոտ էր, կարծես վճռել էր անհամբերութիւնից ճաքեցնել այդքան մարդկանց :*

*Նրա թիկնապահներից մի քանիսը դէս ու դէն վազեցին, նորից վերադարձան եւ ինչ որ բաներ ասացին: Անցան ծանր րոպէներ :*

*— Բերում են, վերջապէս լսուեց մի խեղդուած շշուկ, որ սկսեց ալիքների նման ման գալ նայողների կոյտերում :*

*Գլուխների ծովը երերաց, ամէն մէկն աշխատում էր յարմար տեղ բռնել: Տան ետեւից մի քանի մարդիկ երեւացին եւ անհամար աչքերը վերջապէս տեսան յանցաւորին:*

*Նա չէր քայլում, այլ քարշ էր ընկնում ծնկերի վրայ, որովհետեւ նրա աջ ոտը բոլորովին չէր գործում: Առջեւից գնացողը ձգում էր նրա վզին կապած շղթան եւ նա գարհուրելի ջանքեր էր գործ դնում, որ կարողանայ աւելի արագ շարժուել : Մեռելային գունատութիւնը նստել էր նրա դէմքին, որի վրայ երեւում էր մի նօսր մօրուք :*

*Դեռ տեղը չհասած՝ նա արդէն մեռած էր , կարծես նրան դուրս էին քաշել մահուան անկողինից :*

*Այդ հանգամանքը զարմանք պատճառեց հանդիսատես հիւրերին: Հիասթափումն ընդհանուր էր:*

*— Սա մեռնելու վրայ է, ասացին մի քանիսները :*

*— Ձողի ծայրին չի հասնի, կէս ճանապարհին հոգին կուտայ:*

*Կալանաւորը կարծես խիստ դժգոհ էր այդ վկայութիւններից :*

*Բարձրացնելով իր գլուխը, նայեց չորս կողմը, տեսաւ ահագին բազմութիւնը եւ ընդունելով արհամարհող մարդու հպարտ դիրքը, ասաց, աչքերը բեւեռած բէկի վրայ .*

*— Հանդիստ եղիր, ես չեմ խանգարի քո այդ մեծ հանդէսը··· Իմ մէջ դեռ ոյժ կայ, կարող եմ, եթէ ուզեմ՝ քեզ զուարճացնել , երկար մնալ ձողի գլխին :*

*Նա հասաւ իր նպատակին. նա հասկացրեց որ սպանութեան հանդէսը կորցնում է իր նշանակութեան մեծ մասը: Ամէնէն անգութ չարագործները անգամ այսքան հանդարտ ու անտարբեր չէին մօտենում այս տեսակ մահուան :*

*Նոյնիսկ այնպիսի գազաններ, որոնց համար մարդասպանութիւնը զուարճութիւն էր, դողում էին ցցի դիմաց :*

*Շատերը այնքան թուլանում էին, որ սկսում էին գթութիւն հայցել, իսկ ուրիշներ այնքան զայրանում էին, որ կատաղած այս ու այն կողմն էին ընկնում, հայհոյանքներ էին թափում ամէնքի վրայ : Թէ աղաչանքները եւ թէ կատաղութիւնը , սակայն, միեւնոյն միտքն էին յայտնում, նրանք հաւասար չափով ցոյց էին տալիս թէ որքան սոսկալի բան է ձողի գլխին սպասող մահը:*

4.— Կ'երաշխաւորուի Սուրիոյ անկախութիւնը, ուրեմն վախ չկայ որ այդ երկիրը բռնի կցուի Յորդանանի կամ Իրաքի :

Իրաքի նախարարներէն Ապտուլլահ Իպրահիմ կնքուած համաձայնութիւնը կը նկատէ «կէս քայլ մը», ապահովելու համար խաղաղութիւնը Մօտաւոր Արեւելքի մէջ : Իր կարծիքով, «միայն արհեստագիտական եւ տնտեսական աջակցութիւնը կրնան ապահովել իրական խաղաղութիւնը » :

╳ Կարգ մը շրջանակներու մէջ դիտել կու տան թէ Երեք Մեծերը աճապարած են այս համաձայնութիւնը կնքել հետեւեալ պատճառներով. — 1. Արաբական Դաշնակցութեան քարտուղարը վերջերս կը յայտարարէր թէ անհրաժեշտ կը համարեն մերձեցում մը փորձել Խ. Միութեան հետ.— 2. Սուրիոյ կառավարութիւնը որոշած էր պատուիրակութիւն մը ղրկել Մոսկուա, քաղաքական եւ տնտեսական համաձայնութիւն մը կնքելու համար :

---

ԳԵՐՄԱՆԻԱ 825.613.660 ՏՈԼԱՐ հատուցում վճարած է 19 յաղթական պետութեանց, 1949ին, բստպաշտօնական տեղեկագրի մը : Մինչեւ յունուար ընդհ. գումարը պիտի հասնի 1.034.000.000 տոլարի : Խ. Միութիւնը, որ այս հաշիւէն դուրս կը մնայ, ստացած է 18 անգամ աւելի քան միւս 19 պետութիւնները :

ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ կուսակցութեան համագումարը բացուեցաւ երէկ, Միւթիւալիթէի սրահին մէջ : Օրակարգի գլխաւոր խնդիրներէն մէկն է կառավարութեան մասնակցելու հարցը : Մեծամասնութիւնը ժխտական դիրք բռնած է : (Ընկերվարական նախարարները դահլիճէն հրաժարեցան փետրուար 5ին) : Ցիսուն տարիէ ի վեր, առաջին անգամ է որ ընդհ. ժողովը կը գումարուի առանց Լէոն Պլումի :

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ արտաքին նախարարը, Սիրոքի, ճառ մը խօսելով կուսակցական համագումարին մէջ, խստօրէն քննադատեց իր նախորդը՝ Քլեմանթիսը, իբրեւ «քաղքենի – ազգայնական որ 1939էն ի վեր թշնամական դիրք մը բռնած էր Խ. Միութեան եւ բանուորական դասակարգին հանդէպ» եւն. :

ԵՈՒԿՈՍԼԱՒԻԱՅԷՆ պիտի հեռանայ Խ. Միութեան արբանեակ երկիրներու վերջին ներկայացուցիչը, լեհական դեսպանը :

ՎԵՑ ԿՈՅՐԵՐ իրենք զիրենք Թունուորեցին Հրապարակաւ, Գահիրէի մէջ, աղերսագիր մը ներկայացնելէ վերջ վարչապետին : Բոլորն ալ հիւանդանոց փոխադրուեցան : Ուզած են ուշադրութիւն գրաւել այս եղերական ցոյցով, իրենց բախտակիցներուն Թշուառութեան վրայ :

## Երեկոյթ պարահանդէս

Կազմակերպուած Իսիի Կ. Խաչի մասնաճիւղին կողմէ, այս շաբաթ, գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս, քաղաքապետարանի սրահին մէջ :

Գեղարուեստական խնամուած բաժին : Այս առթիւ առաջին անգամ ըլլալով կը ներկայացուի՝ « ՄՈՒՐԱՏ – ԴԱՒԻԹ » կամ «ՄԻՈՒԹԻՒՆԸ ԶՕՐՈՒԹԻՒՆ», ծիծաղաշարժ զաւեշտ, սիրայօժար մասնակցութեամբ, դերասան Ա. Միխիրեանի եւ Իսիի «Խանասոր» խումբի լաւագոյն ուժերու :

Թատերախաղի վերածեց Բ. Հապէշեան, Ն. Պէշիկթաշլեանի «Երգիծավէպեր»էն :

Թառ.— Պ. Օնանեան :

Եւրոպական պարեր երկու նուագախումբով, Կարօ Սարեան եւ Գլօտ Լիւթէռ :

Հաղորդակցութեան միջոց.— métro Mairie d'Issy :


ՓԱՐԻԶԻ ԿԵԴՐՈՆԸ

**PARFUMERIE – MAROQUINERIE**

# Au SAC PARFUMÉ

ՏԷՐ ԵՒ ՏՆՕՐԷՆ ԳԵՂԱՄ ԹՈՐՈՍԵԱՆ

վերջին նորաձեւութեամբ ճամբորդական առարկաներ, **fantaisie** գոհարեղէններ, կիներու պայուսակներ փարիզեան ճաշակով եւ ընտիր **ser – viette**ներ այրերու համար :

ՄԵԾ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԾԱՆՕԹ ՎԱՃԱՌԱՆԻՇԵՐՈՎ ԱՆՈՒՇԱՀՈՏՈՒԹԵԱՆՑ, ԱՄԷՆ ԿԱՐԳԻ

**ARTICLES DE PARIS**

Gare du Nordի մօտ :

**106 Bld. Magenta, Paris** (10) **Tél.: Nord 05–78**

# ՓԱՅՏ ԵՒ ԱԾՈՒԽ

Ունինք ամէն տեսակ ածուխ եւ փայտ, ԱՆՄՐՑԵԼԻ ԳԻՆԵՐՈՎ : ՄԵԾԱՔԱՆԱԿ եւ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ :

Յաճախորդներուն գոհացում տալու համար կը փոխադրենք մինչեւ տուն :

ԴԻՄԵԼ.— Alexanian, Issy les Moulineaux, 10bis Bld. Rodin, Tél. Michelet 28.79 :

կամ Meudon, 7 rue du Pourtour, tél. OBS. 22.71 :


Imprimerie DER AGOPIAN. 17 rue Damesme - (13)
Le Gérant : A. NERCESSIAN

# ՄԱՅԻՍ 28Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

## Մարսէյլի մէջ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ, մասնակցութեամբ բոլոր խումբերու, Նոր Սերունդի Շրջ. վարչութեան եւ Ֆր. Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն :

Կը տօնուի այս շաբաթ, ժամը 20.30էն մինչեւ լոյս, Théâtre G. Verdi (նախկին Casa d'Italia), 56 rue d'Alger :

Կը նախագահէ ԲԺ. Յ. ՍԻՎՐԻՀԻՍԱՐԼԵԱՆ

Կը խօսի ընկեր ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ

Ֆրանսական ընկերվարականներու կողմէ կը խօսին երեսփոխաններ ԳԱՍԹՈՆ ՏԷՖԷՌ եւ ՖՐ. ԼԷՆՀԱՐ :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Իրենց սիրայօժար մասնակցութիւնը կը բերեն երիտասարդ ջութակահար Պ. ԼԵՒՈՆ ՂԵՒՈՆԴԵԱՆ, Օր. Օր. Ն. ՏԷՐ ԱՐՍԷՆԵԱՆ եւ ՄԱՐԿՈՍԵԱՆ (մեներգ) :

Կ'արտասանեն ընկերներ Վ. Տ. Վարդանեան, Գ. Քէնտիրեան, Ս. Սարգիսեան եւ Յ. Մակարեան :

Խմբերգ Սէնթ Աննի երգչախումբին կողմէ ղեկավարութեամբ Հ. Համբարձումեանի :

ԿԵՆԴԱՆԻ ՊԱՏԿԵՐ ՄԸ՝ «Հայկական Ազատամարտ»ը :

Անգամ մը եւս պիտի ցուցադրուի Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ ՇԱՐԺԱՆԿԱՐԸ :

Հայկական եւ եւրոպական պարեր : Առատ չքասեղան (պիւֆէ) :

Մուտքը ազատ է :

★

ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէի, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի եւ Ֆրանսահայ Կ. Խաչի :

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, Salle des Fêtesի սրահը, 22 rue Voltaire, Ալֆորվիլ :

Կը նախագահէ ընկեր ՅՈՎՀ. ՋԵՐՋԵԱՆ

Կը խօսի ընկեր ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ

Գեղարուեստական բաժին.— Տիկին Ֆիլ. ԱՍԱՏՈՒՐԵԱՆ եւ Աւ. ՔԻՒՓԷԼԵԱՆ (մեներգ), դաշնակի ընկերակցութեամբ Madame Nièlի :

Զ. ՄՈՒՐԱՏԵԱՆ եւ Տիկին ԳԵՂ. ՊԵՏՐՈՍԵԱՆ (արտասանութիւն) : Հայկական խմբական պարեր, Նոր Սերունդի աղջկանց խումբի կողմէ :

Երգախառն կենդանի պատկեր մը, «Հայաստանին» : Եւրոպական պար՝ ժամը 6էն մինչեւ կէս գիշեր : Նուագախումբ ԿԱՐՕ ՍԱՐԵԱՆԻ :

Մուտք 100 ֆրանք :

★

ԱՌՆՈՒՎԻԼ.— Մայիս 28ին, կէսօրէ վերջ : ժամը 3էն մինչեւ կէս գիշեր :

Կը նախագահէ Կ. ԵՐԱՆԵԱՆ

Կը խօսին ընկեր Ս. ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ եւ քաղաքապետ MAZURIER :

Գեղարուեստական խնամուած բաժին : Մանրամասնութիւնները տեղին վրայ :

Հաղորդակցութեան միջոց.— Շոգեկառք Gare du Nord, ժամը 14ին : Հանրակառք թիւ 268, Villiers le Bel, Porte de la Chapelleէն :

★

ՎԻԷՆ.— Մայիս 28ին, ժամը 14.20 : Théâtre Municipalի մէջ :

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կոմիտէի եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի, Հ. Մ. Ը. Մ.ի, Կ. Խաչի, Տ. Տ. Հայր. Միութեան, Հայ Կամաւորներու Մարտիկներու Միութեան :

Կը խօսի ընկեր ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

★

ԿՐԸՆՈՊԼԸ.— Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. կոմիտէի եւ մասնակցութեամբ Կապ. Խաչի, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի եւ սանուհիներու միութեան :

Այս կիրակի ժամը 3.30ին, Ile Verte, rue Lachmann, dancing Olympiaի սրահին մէջ :

Կը խօսին ընկեր Հ. ԲԱԼՈՒԵԱՆ եւ Տիկին ODETTE ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

Խօսք պիտի առնէ Կրընոպլի քաղաքապետ Dr. **Martin** :

★

ՏԷՍԻՆ, Մայիս 28ին :

ժամը 20.30ին, Հ. Յ. Դ. Տան սրահին մէջ :

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կոմիտէի, մասնակցութեամբ Կապոյտ Խաչի, Ռազմիկներու եւ Կամաւորներու Միութեան, Նոր Սերունդի :

Կը խօսի ընկեր ՀՐԱՆՏ ԲԱԼՈՒԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին : Մուտքը ազատ է :

★

ՊՈՌՏՈՅԻ ՄԷՋ.— Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մուրատ խումբի, մասնակցութեամբ Նոր Սերունդի եւ Ֆր. Կ. Խաչի մասնաճիւղին :

Այս կիրակի ընկերվարականներու սրահը, Սընօն : Հանդէսէն վերջ խնջոյք :

Մուտքը ազատ է :

### ՄԱՅԻՍ 28Ը ԼԻՈՆԻ ՄԷՋ

Այս Շաբաթ երեկոյ, ժամը 8.30ին Horlogeի սրահին մէջ, 137 Cours Lafayette :

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէի, մասնակցութեամբ Լիոնի Ազգ. Միութեան, Աղքատախնամ Մարմնոյ, Լիոն Տէսինի Հ. Մ. Ը. Մ.ի, Ֆր. Կապոյտ Խաչ, Հայ Ուս. Միութեան, Սանուհիներու միութեան, Հ. Յ. Դ. Նոր Սերունդին :

Կը նախագահէ ընկ. ՆԵՐՍԷՍ ՄՈՄՃԵԱՆ

Կը խօսի ընկեր ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Գեղարուեստական խնամուած բաժին : :

Հանդէսէն վերջ խնջոյք, մինչեւ առաւօտ, Brasserie Etoileի սրահին մէջ, 1 Cours Gambetta :

★

ՎԱԼԱՆՍ.— Մայիս 27ին, ժամը 20.30ին : Salle des Fêtes :

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. կոմիտէին, մասնակցութեամբ Ռոմանի ենթակոմիտէին, Ֆր. Կապ. Խաչի սանուհիներու, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի եւ բարեկամ կազմակերպութեանց :

Կը նախագահէ՝ ընկեր Մ. ԴԱՒԻԹԵԱՆ

Կը խօսի ընկեր ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Մուտքը ազատ է :

★

Ս. ՇԱՄՈՆ.— Մայիս 27ին, ժամը 8.30ին : Salle **Jeanne d'Arc** :

Նախաձեռնութեամբ «Վարուժան» կոմիտէի

Կը նախագահէ Ս. ԸՆՏՐԻԿԵԱՆ

Կը խօսի ընկեր ՀՐԱՆՏ ԲԱԼՈՒԵԱՆ

Մուտքը ազատ է :

★

ՓՈՆ Տ'ՕՊՆԱՅԻ մէջ, այս կիրակի կէսօրէ ետք ժամը 2.30ին :

Կը խօսի ընկեր Ս. ՊԻԼԱԼԻ

Գեղարուեստական ճոխ բաժին : Մուտքը ազատ է :

---

ՖՐ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ 12րդ Պատգմ. ժողովը յետաձգուած է Յունիս 16ին :

---

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փորթ տ'Իթալիի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ այս շաբաթ գիշեր ժամը 8ին, ընկերուհի Նուարդ Եղիազարեանի բնակարանը : Կարեւոր օրակարգ : Անպայման ներկայ գտնուիլ :

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի երգի փորձերը կը սկսին այս երեքշաբթի իրիկուն, ժամը 8.30ին Խրիմեան սրահին մէջ, ղեկավարութեամբ ընկեր Սահակ Յովհաննէսեանի :

ԱԼՖՈՐՎԻԼԻ Նոր Սերունդին դասախօսութիւնը այս երեքշաբթի իրիկուն Patronage Laïque, Place de l'Europe : Կը խօսի Պ. Ա. Մեսումենց : Նիւթը՝ «Աշուղ Ջիւանի» : Կը հրաւիրուին ընկերներ եւ համակիրներ :

ԱՐԵՒՄՈՒՏՔԻ ԼՍԱՐԱՆԻՆ այս երկուշաբթիի հաւաքոյթը յետաձգուած է յաջորդին, Հոգեգալուստի արձակուրդին առթիւ :

Ս. ՍԱՂԸՐԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Այրի Տիկին Ֆ. Ս. Սաղըրեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ Փարիզի Հայոց եկեղեցին, 15 rue Jean Goujon, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր ՍԱՐԳԻՍ ՍԱՂԸՐԵԱՆԻ մահուան քառասունքին առթիւ : Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները :

---

ԱԼՖՈՐՎԻԼԻ Նոր Սերունդը արշաւ մը կազմակերպած է դէպի Rambouillet, Vallée de Chevreuse, երկուշաբթի առտու ժամը 8ին : Երթեւեկի ծախք 350 ֆրանք : Նոր Սերունդի անդամներուն համար 150 ֆրանք :

Դիմել Օր. Մառի Պետրոսեանի, 3 rue Violette : Ժամադրավայր Place Carnot :


# Կ'ՈՒԶՈՒԻՆ

ԼԱՒ ԿԱՐՈՒՀԻՆԵՐ իրենց բնակարանին մէջ աշխատող : Տեւական գործ՝ լաւ վճարումով :

Դիմել՝ Մինասեան, 32 rue des Annelets, Paris (19), մէթրօ Botzaris կամ Jourdain :

ՃԱՇԱՐԱՆ ԱՐԱՐԱՏ

# LE DOME ARARAT

Տէր եւ Տնօրէն՝ Ս. ԳԱՐԱԽԱՆԵԱՆ

Նիս այցելող հայրենակիցներուն կ'ապահովէ պանդոկի եւ այլ դիւրութիւններ :

ԱՐԵՒԵԼԵԱՆ եւ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՀԱՄԵՂ ԿԵՐԱԿՈՒՐՆԵՐ եւ ԽՄՈՐԵՂԷՆՆԵՐ, մատչելի գիներով :

**1 Avenue Thiers**. Կայարանի դիմաց

Բաց է առտուան ժամը մինչեւ 2

Հեռաձայն 890–38

